ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳԱՐԱՆ

ԼԹ.

# ԱՐԱՐԱՏԸ

## ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՄԷՋ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԴՐ. ՍԻՄՈՆ ՎԷԲԷՐԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԲԱՌՆԱԲԱՍ Վ. ՊԻԼԷԶԻԿՃԵԱՆ

ՎՐՕՆ. ՄԽԻԹ.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԹ.

# ԱՐԱՐԱՏԸ

## ՍՈՒՐԲ ԳՐՈՅ ՄԷՋ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1901.

# ԱՐԱՐԱՏԸ

## ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՄԷՋ

ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԴՐ. ՍԻՄՈՆ ՎԷԲԷՐԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Հ. ԲԱՌՆԱԲԱՍ Վ. ՊԻԼԷՃԻԿՃԵԱՆ

ՎՐԴՆ. ՄԽԻԹ.



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

## Ա Զ Դ

Դր. Սիմոն Վէբէր ծանօթ հայագէտ պրոֆեսորն ի Փրայբուրգ՝ Տիւբինգէնի աստուածաբանական եռամսեայ թերթին մէջ (Theol. Quartalschrift, LXXXIII. Jahrg., 1901, III. Quartalheft, p. 321—374)՝ „Ararat in der Bibel“ տիտղոսին տակ հրատարակած է այս ուսումնասիրութիւնը, զոր շահեկանութենէ զուրկ չհամարելով՝ կը ներկայացընենք հայ հասարակութեան՝ հանելով "Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթէն :

Պր. Յ. Թոփճեան՝ ուսումնասիրութեանս ամփոփումը հրատարակած է "Նոր-Դար„ի այս տարեշրջանին մէջ (1901, Թ. 152 եւ 154):

Հ. Բ. Պ.

---

[1] Տես "Հանդէս Ամսօրեայ„ ԺԵ. տարի, 1901, Թ. 7, 8, 10—11 եւ 12:

# ԱՐԱՐԱՏԸ Ս. ԳՐՈՑ ՄԷՋ

Ս. Գրոց առաջին թղթերուն մէջ մեր դիմացը կ'ելլէ Արարատ անունը։ Ծնն. Ը, 4 եբրայական բնագիրը կը պատմէ. «Եւ նստաւ տապանն յեւթներորդում ամսեանն ի քսանեւեւթն ամսոյն ի լերինս Արարատայ։» Եսայի ԼԷ, 38 կը գրէ. «Եւ մինչդեռ երկիր պագանէր (Սենեքերիմ) ի տան իւրում Նասրաքայ կռոց իւրոց, Ադրամելէք եւ Սարասար որդիք նորա սպանին զնա սրով եւ ինքեանք գնացին փախստական յերկիրն Արարատ[1]։» Դ. Թագաւորաց ԺԹ, 37 նոյն տեղեկութիւնը կու տայ եբրայական բնագրին մէջ՝ նոյն Արարատ անունով[2]։ Նոյն անունը գարձեալ Երեմիայի քով ԾԱ, 27 կը գտնենք. «Առէք նշան ի վերայ երկրիդ. փող հարէք ընդ ազգս ամենայն, հրաւիրեցէք ի վերայ Բաբելոնի ազգս։ Պատուէր տուք յինէն թագաւորութեանցն Արարատայ[3], Մեննեանց եւ Ասքանազայ։» Վեր-

1 Հայն «յերկիրն Արարատայ»ի տեղ ունի՝ «ի Հայս»։

2 «Եւ եղեւ մինչդեռ երկիր պագանէր ի տան Նեսրաքայ աստուածոյ իւրում, Ադրամելէք եւ Սարասար որդիք նորա հարին զնա սրով, եւ ինքեանք զերծան յերկիրն Արարատայ։»

3 Մամ՝ Լ՛կոթ Արարատ։

ջապէս Ցովբիթի յունարէն բնագրին մէջ Ա, 21 կը տեսնենք նոյն անունը, ուր Սենեքերիմը սպաննողներուն համար կ'ըսուի. «փախեան նոքա ի լերինս Արարատայ» (Հայն՝ Հայոց)։ Ի՞նչ կը նշանակէ այս անունը։ Լերա՞ն անուն է Ծննդոց մէջ։ Կրնա՞նք այս անունը՝ արդի կամ գէթ հին-քրիստոնէական աշխարհագրութեան մէկ անունովը ներկայացընել։ Մի եւ նո՞յն նշանակութիւնն ունի այս անունն այն ամէն տեղերը, ուր կը հանդիպի։

Ս. Գրոց մեկնիչները շատ անգամ հետազօտութեան նիւթ ըրած են այս խնդիրները։ Ուսումնասիրութեանս նպատակն է փորձ մ'ընել ուղղելու մինչեւ հիմայ եղած մեկնութեանց սխալներն եւ անճշդութիւնները։

## 1.

Ստուգաբանութիւն եւ պատմութիւնն անուան մը նշանակութիւնը իմանալու աղբիւրներն են։ Սակայն մեր այս դէպքին մէջ տակաւին կարելի չէ՝ առաջին աղբիւրէն օգտուիլ։ Մովսէս Խորենացի[1] Հայկայ վեցերորդ յաջորդին՝ Արայի անունէն յառաջ կը բերէ Արարատը։ Այս պարագայի մէջ՝ ենթադրելով թէ ուր[2] =

1 Պատմ. Հայոց Ա, ժա. Ա, ժբ. Ա, ժդ։

2 Murad Friedrich, Ararad und Masis, Studien zur armenischen Alterthumskunde und Literatur. Heidelberg 1901։ Յօդուածիս հեղինակն այս ուսումնասիրութեանս այն ատեն ծանօթացաւ, երբ յօդուածս անցեալ ամառ գրուած լմնցած էր։ Յօդուածս տպագրութեան յանձնելէն յառաջ՝ կարելի եղաւ սակայն Մուրատի պատուական երկը գործածել։

երկիր բառէն կազմուած է անունս, Արարատ պիտի նշանակէ Արայի[1] արտ, երկիր։ Շոլց[2] Արարատ (Այրարատ) անուան մէջ կարծեց թէ մեր դիմացն ելլողն ըլլայ Թերեւս ուրյուրտափա եւ "սուրբ երկիր" թարգմանելը հնարաւոր համարեցաւ։ Մեր խնդիրը լուծելու համար կարեւորութիւն մը չունի Գոշէի՝ Այրարատն ուրճուրթայէ (= ժողովատեղի Արեաց) մեկնելը[3]։ Իսկ Հումմէլաուէր[4] Շրադէրի հետեւելով կ'ըսէ. "Արարատ նոյն է սեպագիր արձանագրութեանց Ուրարտուին կամ Ուրտուին հետ . . . եւ կը նշանակէ ըստ ստուգաբանութեան՝ լեռնային երկիր։" Ըստ Շպիգէլի[5] Արարատ (hara եւ haraiti բառերէ = hara — haraithyâo) կը նշանակէ ամբողջ աշխարհքը պատող դիւցալեռը երանեան զրուցին։ Արարատը թէ երկրի անուն հասկցողն եւ թէ լերան անուն մեկնողը կրնայ ըստ այսմ ստուգաբանական ապաւէն մը գտնել, քանի որ այս ստուգաբանութեանց հիմը՝ Արարատ բառին որ լեզուէն ըլլալն ապահով չէ։ Արարատ անուան առաջին անգամ յիշուելուն ընկերացող պարագաներն ենթադրել կու տան թէ ասորեստանեան բառ չէ, թէպէտ եւ կրնայ ըլլալ որ Ասորես-

---

1 Հմմտ. Miskgian, manuale lexicon armeno-latinum Romae 1878, էջ 38.

2 Commentar zu Jeremias. Würzburg 1889, Տես Գւ. ԾԱ, 27։

3 Մուրքատ, անդ, էջ 22։

4 Մեկնութիւն Ծննդոց, Պարիզ 1895, էջ 269. Schrader, Keilinschriften und Geschichtsf. էջ 30։

5 Spiegel, Eran. Alterthumsk. I, էջ 482.

տանցւոց բերնին մէջ փոփոխութիւն կրած ըլլայ։ Ինչու որ ամէնէն հին տեղեկութեանց մէջ, որոնց մէջ Ասորեստանցիք վերջէն Արարատ անունը կրող երկրին վրայ կը խօսին, Արարատ անունը չի յիշատակուիր, այլ այն երկիրը պարզապէս Նաիրի կը կոչուի։ Եւ մտադրութեան արժանի պարագայ մըն է, որ հայկական Այրարատը, եբրայական Արարատ եւ յունարէն Ἀλαρόδιοι անանկ ձեւեր են, որ առանց ասորեստանեան կամ բաբելոնական միջնորդութեան անցած մտած են նոյն լեզուներուն գանձուն մէջ, այնպէս որ կրնայ ենթադրուիլ թէ Արարատ բառին արմատն ոչ-ասորեստանեան կամ ոչ-բաբելոնական լեզու մըն է։ Մովսիսի Ա. գրոց բնագրին այժմեան ձեւը սկզբնական ենթադրելով՝ եբրայական Արարատը ժամանակաւ աւելի կանուխ վկայուած է, քան Ասորեստանցւոց Ուրարտուն։ Մուրատ մտադիր կ՚ընէ որ հնգամատեններին քննադատութեան մէջ այս տեղն Եահվէականի մը կ՚ընծայուի[1]։ Նորագոյն ժամանակներս Ծննդոց գրոց ամէնէն հին մասունքներէն կը համարուին այս յիշատակարանին ընծայուած կտորները[2]։ Արարատ անուան արիական ծագում ունենալն ենթադրողներուն դէմ Վիգուրու[3] կ՚ըսէ. «Արարատ անունն արիական բառ մ՚ընելու ամէնեւին պատճառ չկայ, վասն զի կարծեցեալ Աիրյարաթա բառը բոլորովին

1 Մուրատ, անդ, էջ 1։
2 Hoberg, Die Genesis, S. XXXII.
3 Vigouroux, Dictionnaire.

շինծու է։ Ի մասնաւորի Հայիգէլի դէմ ելած է Լագարդ եւ Լագարդի հետեւելով Մուրատ[1]. վերջինս Գոշէի մեկնութիւնն ալ անյաջող կը համարի։ Տարակոյս չկայ որ ստոյգ է թէ Ուրարտու = Արարատ անունը հնդիկ-եւրոպական Հայոց գաղթելու թուականէն — ինչպէս հիմայ առհասարակ կ'ընդունուի — դարեր յառաջ գործածուած է նոյն երկրին համար։ Տակաւին լուծուած չէ սա խնդիրը թէ Կրեչմերէ եւ Եէնսէնէ՝ Արարատայ "Նախահայ" բնակիչ կոչուածները արիակա՞ն լեզու կը խօսէին թէ ոչ։ Եէնսէն[2] փորձեց ապացուցանել թէ նոյն լեզուատոհմին կը վերաբերին մեզի պահուած այն նամակին լեզուն, զոր Եգիպտոսի մէկ թագաւորին իբր 1400ին կամ աւելի կանուխ՝ գրած է Արզաւիայի(?) մէկ թագաւորին — այս լեզուն էր թերեւս Արզաւիայի (թերեւս Կարկեմիշի կողմերը գտնուողին) լեզուն — նմանապէս Միտաննիի — հիւսիսային Ասորիքի մէջ նահանգի մը — լեզուն, նոյնպէս Նախահայոց՝ այսինքն Հայաստանի մէջ Հնդիկեւրոպացի գաղթականներէն յառաջ՝ բնակողներուն լեզուն, եւ վերջապէս Ասորեստանի արեւելակողմը բնակող ժողովրդեան մը լեզուն։ Սանտալճեան[3] կը խոստանայ ապացուցանել թէ

---

1 Մուրատ, անդ, էջ 22։ de Lagarde arm. Stud. S. 11.

2 Hittiter und Armenier, S. 202 եւ ZDMG. Bd. 48 S. 434 ff.

3 L'Idiome des inscriptions cunéiformes urartiques Rome 1898. — Հմմտ. նաեւ Տաշեան, փորձ մը լեզուի վաննեան բեւեռագրութեանց, Հանդ. Ամս. 1899, էջ 16։

Տօսպեան սեպագրութեանց լեզուն հնդիկեւրոպական ըլլայ: Այսպարագային մէջ ալ սակայն, քանի որ Արարատ անունն խաղդեայց թագաւորութեան ոչ-ազգային յորջորջումն է, հնարաւոր է, որ Արարատ անունը անարիական լեզուէ մը ծագում ունենալով՝ իւր հայրենիքը թերեւս փնտռուելու է այն կողմերուն լեզուներէն մէկուն մէջ՝ ուրալալտայեան խմբէն լեզուի մը կամ վրականին ազգակից գաւառաբարբառի մը մէջ[1]:

Պէտք ենք պատմական հետազօտութեան ճամբան անցնիլ: Հոս ալ կարծես վայրկեան մը սա խնդիրն մեր առջեւը կ'ելլէ, թէ Արարատը սկզբնաբար երկրի՞ անուն էր թէ լերան. Նորերս Շէօպֆէր[2] լերան անուն ըլլալը ցուցած է՝ հիմնուելով Ծնն. Ը, 4 աղեքսանդրեան թարգմանութեան վրայ եւ հետեւելով հնագոյն ու նորագոյն հեղինակներու:

Արարատը լերան անուն մեկնողներն իրենց կարծիքը հաստատելու համար վկայութեան կը կոչեն Հայաստանի պատմական աշխարհագրութիւնը, որուն մատակարարած տեղեկութիւնները գլխաւորաբար նկատողութեան առնուելու են: Փաւստոս Բիւզանդացի[3] կը պատմէ Ս. Յակովբ Մծբնացւոյ Նոյայ տապանին ելլել փորձելը

---

1 Հմմտ. Տաշեան անդ: Lehmann. Das vorarmenische Reich von Wan. Deutsche Rundschau LXXXIII, 3; Hübschmann, Arm. Gram. I, 405.

2 Gesch. des A. T. S. 50.

3 Պատմ. Հայ. Գ, ի: Վենետ. 1889, էջ 22 եւ 24: Հմմտ. այս մասին Մուրատ, անդ, 2 եւն:

եւ այս առթիւ տապանակիր լեռը Սարարատ կը կոչէ։

Էմինեան [1] մտադիր կ՚ընէ զմեզ, թէ այս ընթերցուածն ընդօրինակողին մէկ սխալն է, վասն զի այս անունը միայն հոս կը հանդիպի եւ թէ բնագրին մէջ Արարատ եղած ըլլալու է հաւանականագոյնս։ Արդ հին հայ գրականու- թեան թերեւս ամէնէն հին՝ մինչեւ մեզ հասած մէկ վկայութեամբը կը հաստատուի թէ Արա- րատը լերան անուն է։ Եւ որ փաստսի տուած այս տեղեկութեան կը միացընէ Կիպեր- տի [2] հաղորդածն ու Նորերս Մուրատի [3] յայտ- նած կարծիքը, թէ Բարիս անունը Մասիսի Բարձր վերադիրն է եւ թէ Հայոց Մասիսն է Նիկողայոս Դամասկացւոյ Բարիսը [4], որ՝ ասոր ըսածին հա- մաձայն՝ ջրհեղեղէ ազատողներուն ապաւէնն էր եղած, կրնայ Չպիդէլ-Սէյսի եւ այլոց հետ սա կարծեաց պաշտպան կանգնիլ թէ Մասիսը փաւս- տոսիատեն արդէն Արարատ անունը կը կրէր, եւ թէ կարելի է որ լեռն այս անունը հնագոյն ատեններէ ի վեր ունենար [5]։ Եթէ Բէլք՝ Սաղմա- նասար Բ.ի գործածած Ադդուրի լեռնանունն իրաւամբ այսօրուան Մասիսին վրայ կ՚առնու,

---

1 Langlois Collection des historiens anc. et mod. de l'Arménie. I. 218.

2 Lehrbuch der alten Geographie, Berlin 1877. S. 75.

3 Մարքուարտ, անդ, էջ 49, որուն համաձայն կ'ելլէ Չպիդէլի հեռաւորութիւնը։

4 Յովսեպոս Փլաւիոս, Antiqu. I. 3. 6. (95) Niese, Bd. p. 20.

5 Spiegel Erân. Berlin 1863. S. 287. Հմմտ. Մարք- ուարտ, անդ էջ 3։

աստղ սահման մը կը գծուի անոնց, որ Ս. Գրոց Արարատ անունն իբր Մասիսին նախնական անունը կ՚ուզեն մեկնել[1]։ Ասոնց Փաւստոսի նոյն տեղէն հանած հետեւութիւններն ալ չափազանց են։ Քաջունի[2] ընդդէմ Լանգլուայի Սարարատը բաղադրեալ բառ մը կը համարի՝ կազմիչ մասունքն ըլլալով Սար (լեռ) եւ Արարատ։ Այս պարագայի մէջ անանկ մտածելու է՝ որ սկզբնաբար «ի լերան» գոյականը կը պակսէր։ Մուրատ[3] մտադիր կ՚ընէ որ Սարարատ անունը կրնար բառերու սխալ բաժանմամբն ալ ծագիլ՝ «ի լերանն Արարատայ»ն «ի լեառն Սարարատայ» բաժնելով։[4]

Այս երկու դէպքի մէջ ալ Փաւստոս մեզի այնչափ կը նպաստէ, որչափ Ծննդոց յիշեալ տեղը, ուրկէ առած կ՚երեւայ Բիւզանդացին։ Ասկէ զատ՝ նոյն տեղւոյն անհարազատութեան վրայ եղած հիմնաւոր կասկածը կը ստիպէ անուան հնագոյն ատեններն ունեցած նշանակութեան նկատմամբ հետեւութիւններ հանելէ ետ կենալու։

Որչափ ալ ապահով է թէ Ծնն. Ը, 4 լեռ մը կ՚ուզէ նշանակել. սակայն աստղ տակաւին իրաւունք չենք ստանար՝ սոյն այս տեղն Արարատ անունը Բ. Թագաւորաց Ա, 21 նմանութեամբն

---

1 Belck, Verhandl. der Berl. Ges. für Anthropologie 1893 S. 71։

2 Աշխարհագրութիւն հին եւ նոր Հայաստ., էջ 10։

3 Մուրատ անդ. էջ 84, սակայն կ՚երեւայ թէ այս մեկնութիւնը Փաւստոսի բացատրութեան էջ 24 չի կրնար մերձեցուիլ։

4 Ընդ., էջ 76–84.

լերան անուն համարելու. ասոր անանկ առաջնորդներ ունինք, որ այլ ճամբով զմեզ ապահով մեր վախճանին կը հասցընեն:

Հայք ալ պահած չե՞ն ջրհեղեղի յիշատակ մը, որ՝ Ս. Գրոց համաձայն՝ անոնց երկիրը ծածկած է:

Աբեղեան[1] այս կէտին վրայ լռութիւն կը պահէ, միայն Քաջաց ու Յաւերժահարսանց ծննդեան վրայ զրոյց մը կը հաղորդէ, որ յայտնապէս Ս. Գրոց՝ ջրհեղեղի վրայ տուած տեղեկութեան վրայ հիմնուած է: Ընդհակառակն Հ. Ալիշան[2] Հայոց ազգային ինչ ինչ տօներուն մէջ ջրհեղեղի նշմարները կը գտնէ: Մուրատ[3] շեշտելով պաշտպան կը կանգնի Հայոց քով ջրհեղեղի ազգային զրուցի մը գոյութեան, թէեւ ասոր գոյութիւնը ցուցընելու համար՝ Մովսէս Խորենացիէն ունի միակ հայկական վկայութիւն մը: Մովսէս Խորենացին իւր Հայոց պատմութեան մէջ Ա, գ, ի մէջ այլոց ակնարկելով մը առաջ կը բերէ բերանացի աւանդութիւններէ առնուած հին զրոյցներու բովանդակութիւնը, որոնց մէջ կը խօսուի ջրհեղեղի Քսիսութրեայ եւ անոր ի Հայս նաւարկելուն ու ցամաք ելլելուն, եւ վերջապէս այն տեղերուն վրայ, ուր ինքն ու որդիքը բնակութիւն հաստատած են: Ի վերջոյ կ՚աւելցուի. "Բայց առաւել յաճախագոյն հինքն Արա-

1 Der arm. Volksglaube, Leipzig 1899. S. 104.

2 Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք Հայոց, էջ 55 եւն եւ 307:

3 Անդ, էջ 42 եւն:

մազնեաց ի Նուագս բամբռան եւ յերգս ցցոց եւ պարուց զայսոսիկ ասեն յիշատակօք։„ Բայց աստի Էլբէրտ[1] մատնանիշ կ'ընէ Խորենացւոյ Ա. գրոց Թ. գլուխն ալ, ուր սակայն ոչ այնչափ ջրհեղեղի վրայ է խօսքը, որչափ հովով մը՝ հսկայից շինած աշտարակին կործանման վրայ։ Այս աղբիւրէն դուրս՝ Մուրատ[2] Նիկողայոս Դամասկացւոյ տեղեկութեանը մէջ ալ — զոր պահած է Յովսեպոս Փլաւիոս[3] --- ջրհեղեղի զրոյց մը կը գտնէ, որ կը տարբերի Ս. Գրոց պատմածէն. անոր խօսքին նայելով մեծ հաւանականութիւն կայ՝ որ այս զրոյցը Հայաստանի մէջ ծագած ըլլայ, այսինքն այն երկրին մէջ՝ որուն մէջն է կ'ըսէ զրոյցն ազատարար լեռն եւ ջրհեղեղի հանգիստավայրը[4]։ Այս տեղեկութիւնն է.

"Մինիաս երկրին վերեւը դէպ ի Հայաստան բարձր լեռ մը կայ, որ Բարիս կը կոչուի եւ ըստ զրուցին հոն շատերը փախչելով ապաստանած՝ ջրհեղեղէն ազատեցան եւ տապանի ապաւինելով լերան գագաթը ցամաք ելան եւ փայտերուն մնացորդներն երկայն ատեն պահուած մնացին. անշուշտ այն ըլլալու է, զոր Մովսէս ալ՝ հրէից օրէնսդիրը կ'աւանդէ։„

1 Natur und Offenbarung, 1900, S. 539.

2 Անդ, էջ 47։

3 Հնութ. եւն, անդ, հմմտ. ցանկ. էջ 59.

4 Կ'երեւայ թէ նաեւ Ղանցի die Universalität der Sündflut ուսումնասիրութեան Ցիւբինգէնի աստուածաբանական եռամսեայ թերթին մէջ (1895, էջ 33) հիմը կազմած է այս ըմբռնումը։

Զրհեղեղեան այս զրուցին կարեւորութիւնը յայնմ է՝ որ կը ցուցընէ թէ հնագոյն ժամանակներն իսկ ըմբռնումն այն էր թէ Մասիս լեռն է տապանակիր լեռը։ Ինչու որ եթէ Նիկոլայոս Դամասկացւոյ "Բարիս"ը Հայոց "Բարձր Մասիս"ը կը յիշեցընէ, այն ատեն տեղւոյն՝ Հայաստանի մէջ Մինիւաս գաւառին վերեւն ըլլալը՝ ուրիշ լեռ չի պահանջեր, բայց եթէ Մասիսը, որ Դամասկացւոյն մատնացոյց ըրած երկրին՝ Այրարատայ՝ ամէնէն բարձր սարն է։ Սա կէտին ալ միտ դնելու է որ Հայոց համար առհասարակ նուիրական, պաշտելի Մասիսը մեծ ու բարձր լեռ մըն է, որուն շուրջը հիւսուած է զրոյցներու ճոխ պսակ մը[1]։

Բաց աստի՝ Յովսեպոս[2] ուրիշ տեղ մը կը գրէ՝ թէ տապանին իջած տեղը Հայաստանի մէջ է եւ թէ նոյն տեղն իւր անունը Հայոցմէ առած է նոյն դէպքին ազդեցութեամբն։ Մեր միտքը բերելու չէ՞նք Նախիջեւանը, ուր առաջին անգամ Նոյ իւր բնակութիւնը հաստատած է ըստ հայկական աւանդութեան։ Յայտնի է թէ Արարատայ լերան վրայ եղած այս զրոյցներն ինչ կրնան վկայել։ Բայց ներեալ չէ ի յառաջագունէ այս աւանդութեամբ Ս. Գրոց բնագիրը մեկնա-

---

1 Մուրքոփ, անդ էջ 49. Ալիշան, Հին հաւատք էջ 56 եւն, կը հաղորդէ կտոր մը՝ տապանին Մասիսին վրայ իջնալուն վրայ. տապանը կ'ըսէ. "Գրգռւա ընկալ զիս"։ Վանայ լճին ափը գտնուող այս լեռը կը պատասխանէ. "Գընա ի Մասիս, — Զի բարձր է քան զիս։"

2 Հրէական հնութ. Ա. 90, Ա. 3, 5. Niese, I. 19.

բանել ու համարիլ թէ առով Արարատայ նշանակութիւնն ու դիրքն որոշուած լմնցած է։

Այս աւանդութեան կերպարանքը սկըզբնակա՞նն է, թէ տեղւոյն ժողովուրդը զայն փոփոխած է. տեղեաց անունները փոխուած չե՞ն, առով տեղեկութիւնը փոփոխութիւն կրած չէ՞ եւ յընթացս ժամանակաց ուրիշ տեղեաց անցած չէ՞։ Ասոնք անանկ խնդիրներ ու անանկ հնարաւոր բաներ են, որ կը յորդորեն ի կախ թողուլ Ս. Գրոց տուած տեղեկութիւնը՝ հայկական աւանդութեան իմաստին համաձայն մեկնելուն ընդունելի ըլլալը, մինչեւ որ լուսին անդրագոյն վկաներ, որ թոյլ տան մեզ՝ հայկական աւանդութեան էութեան վրայ դատաստան ընել։

Նախ եւ յառաջ քննասիրին աչքերը կ՚ելլեն Ս. Գրոց մէկալ տեղերն, ուր այս անունը կը հանդիպի։

Ասոնք ամենեւին չեն նպաստեր այն ենթադրութեան թէ՝ Ծննդոց մէջ Արարատը լերան անուն ըլլայ, այլ չափով մը կը միաբանին "բնիկ" աւանդութեան մեկնութեանը հետ։ Եսայի ԼԷ, 38 Արարատը երկիր կը կոչէ. նոյնը կ՚ընեն Թագաւորութիւնք. Երեմիա Արարատայ թագաւորութեան վրայ կը խօսի, եւ՝ որպէս զի կարծես թէ Ծնունդքը յետնագոյն գրքերու հետ կապող կամուրջը չպակսի, Տովբիթ բովանդակութեան կողմանէ՝ Եսայեայ եւ Թագաւորութեանց հետ, եւ լեզուի կողմանէ՝ Ծննդոց հետ միաբանելով կը գրէ "փախեան նոքա ի լերինս Արարատայ։"

Սուրբ Գիրքը չորս տեղ Արարատ անունը նոյն կերպով երկիր կը մեկնէ եւ ենդաթրել կու տայ թէ առաջին անգամ հանդիպած տեղն ալ երկիր կը ցուցընէ։

Ասոր վրայ յեցեալ՝ Ս. Գրոց մեկնութիւնը կ՚ըսէ. "Արարատ հին կտակարանի մէջ երկրի անուն է[1]։" Բայց ո՞ւր է Արարատ ըսուած երկիրը։ Այս հարցման պատասխանը միայն կրնայ լիուլի կերպով ակնարկեալ մեկնութեան յարգը մէջտեղ հանել։ Այս հարցմամբ զբաղած ատեննիս՝ պիտի տեսնենք թէ Արարատ անունն ունի իր պատմութիւնն, եւ թէ ամէն ժամանակ նոյն մնացած չէ այս անունը կրող երկիրը, որչափ ալ ընդհանրապէս նկատելով՝ իր նշանակութիւնը պահած է անունս։

## 2.

Արարատ ըսուած երկրին դիրքն որոշելու քանի մը կռուան կ՚ընծայեն մեզ նոյն իսկ Ս. Գրոց այն տեղերն, ուր այս անունը կը հանդիպի։

Ինչպէս Եսայեայ ու անոր համապատասխանող տեղերուն, նմանապէս Երեմիայի համաձայն՝ պէտք է որ Արարատն Ասորեստանէ (եւ Բաբելաստանէ) քաղաքականօրէն անկախ երկիր մ՚եղած ըլլայ. եւ պէտք է որ Ասորեստանի թագաւորութեան դրացին եղած ըլլայ։

---

1 Hoberg, Die Genesis. Freiburg 1899. S. 85. Կէօլէր, անդ. էջ 46. Շտրէկ, Հայաստան, Քրդաստան եւ արեւմտեան Պարսկաստան՝ բաբելական-ասորեստանեայ սեպագրերու համաձայն (տես Հայ թարգմ. էջ 78)։

Այս ենթադրութիւններն ընելով միայն լաւ կը հասկըցուի ասորեստանցի հայրապետներուն եւ թագաւորապաններուն Արարատ փախչիլը, եւ ասոնցմով հաստատուն հիմ կ'առնու մարգարէին խօսքը։

Այս երկրին դիրքին վրայ Ծննդոց գիրքն ու Յովբիթ մերձաւորապէս միայն լոյս կու տան։ Այս լեռնաշխարհն Ասորեստանի հիւսիսակողմը կամ հիւսիսային արեւմտակողմը փնտռելու ենք։

Ս. Գրոց եբրայական բնագիրը՝ աւելի բան չ'ըսեր մեզի։ Թէեւ Երեմիա Արարատայ հետ կը յիշէ Միննիի եւ Ասքանազայ թագաւորութիւնները։ Երեմեայ այս խօսքը չենք կրնար իբր առաջնորդ գործածել՝ Արարատ հանելու։ Գեռ. իրաւացի ըլլալէ դադրած չէ Բոխարտի սա խօսքը "Շատ անստոյգ է Ասքանազայ ինչ ըլլալը։" [1] Միննի անունը Ս. Գրոց մէջ միայն այստեղ կը հանդիպի եւ հարկ է որ Միննի Արարատայ միջնորդութեամբն որոշուի եւ ոչ թէ Արարատ Միննիի միջնորդութեամբը։

Աւելի պայծառ կը խօսին Ս. Գրոց թարգմանութիւնները։ Յունարէն եւ լատիներէն բնագիրներուն մէջ Արարատը Հայաստանով (= Հայք) թարգմանուած կը տեսնենք, թէեւ ոչ միշտ։ Նմանապէս ասորական թարգմանութեան մէջ՝ եբրայերէնին Արարատին տեղ՝ Հայք կամ Հայաստան կը գտնենք[2]։ Յովսեպոս ալ կ'ըսէ

1 Հօֆֆման, անդ, էջ 101։

2 Middeldorf, Codex syriaco-hexaplaris, S. 120 Հմմտ. էջ 51։

թէ Հայաստանի մէջ է այն լեռը, որուն վրայ տապանը նստաւ[1]. այս պատմագրին համաձայն՝ ասորեստանցի արքայապաններն Հայաստան փախան։ Նոյնպէս կը մեկնէ եւ Եւսեբիոս[2]։

Թարգմանութեանց ընծայած այս շատ հին մեկնութիւնն արտաքոյ կարգի մեծ լոյս մը կու տայ Արարատ անուան նշանակութեան նկատմամբ։ Այս խնդրոյս մէջ սակայն այս մեկնութիւնը դեռ վերջին խօսք չէ։ Հայ հնագոյն աշխարհագրութեան[3] մէջ Հայաստանի տարածութեան եւ սահմաններուն վրայ տեղեկութիւն փնտռած ատեննիս՝ այս երկրին մէջ Արարատ կամ Այրարատ անունը մեր առջեւ կ'ելլէ նախ իբրեւ Մեծ Հայաստանի նահանգ մը եւ երկրորդ իբրեւ այս նահանգին մէջ գաւառ մը, մինչ վերը յիշուած աղբիւրները Արարատ ըսելով ուղղակի Հայաստանը կը հասկընան։

Հայոց քրիստոնէական կրօնն ընդունած ժամանակներն, ինչպէս Ս. Հերոնիմոս Եսայեայ մեկնութեան մէջ կ'ըսէ, Երասխայ միջին ընթացքին վրայ գտնուող բերրի ու դաշտային երկիրն Արարատ անունը կը կրէր. "Արարատը Հայաստանի մէջ դաշտային գաւառ մըն է, որուն մէջէն կ'անցնի Երասխ[4]։„ Ս. Հերոնիմոսի այս խօսքը բոլորովին կը միաբանի հայ տոհմային

1 Հնութ. Ա. 3. 5. (90) Niese, Հտ. I. p. 10.
2 Migne, 24 p. 353. Հմմտ. 21 եւ 699։
3 Հմմտ. Soukry la Géogr. de Moïse de Ch., Venise 1881, p. 29, 39 . . . ։
4 Migne, 24. p. 389 յԵսայի ԼԷ, 36։

հին հեղինակներուն տուած տեղեկութեանը հետ։ Փաւստոսի[1] քով Արարատը Հայաստանի նահանգ մըն է եւ այն երկիրներու կարգէն, որոնք ուղղակի Հայոց առաջին եպիսկոպոսին իրաւասութեան տակն էն[2]։ Արարատ նահանգին մէջն է Աղցք ամրոցը՝ Արագած լերան մէջ եւ Էջմիածնի հիւսիսակողմը. Նմանապէս Արարատայ մէջ է Արտեւան՝ հայ թագաւորաց գանձարանը[3]։ Ըստ Ագաթանգեղեայ այս գաւառին մէջն են Վաղարշապատ, Արտաշատ քաղաքները[4]. Ծանօթ է կորեան Արարատն իւր Վաղարշապատ[5] քաղաքովն, որ Նորքաղաք ալ կ'անուանուի։ Նմանապէս աստ մէջն է Կողբ, Եզնկայ՝ ջատագով եպիսկոպոսին ծննդավայրը[6]։

Ղազար Փարպեցի իւր Հայոց պատմութեան այլեւայլ տեղերն Արարատ գաւառին եւ Արարատ դաշտին վրայ կը խօսի, որոնց դիւքը

---

1 Անդ, էջ 260, 266։

2 Անդ, Դ ժգ, էջ 117։ Հմմտ. Langlois, անդ, I, p. 250.

3 Անդ, Դ իե, էջ 148 եւ Ե գ, էջ 206։

4 Պատմ. Վենետ. 1862։ Էջ 103. 122. 594. 602. 612. 626. 651։

5 Վենետ. 1894։ Էջ 20, 23։

6 Հմմտ. Schmid, Des Eznik von K., Wider die Sekten, Wien 1900, ուր էջ 6՝ հետեւելով Փիտտերէի եւ հետամնալով Կոնիբիրի՝ Կողբը Տայք նահանգին մէջ կը դրուի։ Կիպերտի Ռիտտերի Երկրագիտութեան համար պատրաստած Հայաստանի ու Քրդաստանի աշխարհացոյցին մէջ՝ Արաս եւ Արփաչայ գետերուն իրարու խառնուած տեղէն քիչ մ'անդին դէպ ի հիւսիս "Կուլպի" (Kulpi) անունով տեղ մը կայ նշանակուած Արարատայ մէջ։

զանազան տեղեաց անուններուն[1] յիշատակուելովն աւելի կ'որոշուի եւ կը համաձայնի վերոյիշեալ աղբիւրներուն։ Եղիշէի ծանօթ է Արարատայ եպիսկոպոս մը. Նմանապէս՝ Արարատ գաւառն ու անոր Արած աւանը[2]։ Մովսէս Խորենացի իւր Աշխարհագրութեանը մէջ կը թուէ Արարատայ 16 գաւառները[3]։ Ուստի տարակոյս չկայ որ Հայաստանի եւ Արարատայ մէջ քաղաքական եւ աշխարհագրական առնչութիւն մը կար։ Արդ՝ արդարացի՞ է Արարատը Հայաստան թարգմանելը։ Կ'երեւայ թէ Հայոց պատմութիւնն ու աշխարհագրութիւնը դիւրութիւն կ'ընծայեն՝ այս դժուարութիւնը վերցընելու։ Քանի որ Արարատ ցեղագրական երկիրը Հայաստանի մէկալ մասանցը հետ կապուած է, ընդունելի կը դառնայ ըսելը թէ Արարատ թէ՛ նահանգ է եւ թէ՛ գէթ օտարներու համար անուն մըն է, որ ամբողջ պետութիւնը կը ցուցընէ, ինչպէս Allemagne ըսելով Գերմանիան կը հասկցուի։ Հայոց պատմութիւնը կամ ինչ որ մեր առջեւն ունինք իբր Հայոց պատմութիւն՝ այս կարծեաց կը նպաստէ։ Երդէն Ագաթանգեղոսի քով Արարատայ Վաղարշապատն արքայանիստ քաղաք է[4]։ Նոյնը կը պատմէ Կորիւն[5]։

Ղազար Փարպեցի Այրարատը գլուխ աշ-

---

1 Վենետ. 1891։ էջ 22. 28. 31. 316. 488։
2 Մատենագր. Վենետ. 1859։ Էջ 22. 61. 139։
3 Soukry, անդ, էջ 33. 45։
4 Անդ, էջ 655։
5 Անդ։

խարհին Հայոց կ'անուանէ[1]։ Արարատը Արշակունեաց թագաւորական տան բնիկ երկիրն է։ Սեբէոսին[2] ծանօթ է այս երկիրը։ Մովսէս Խորենացի[3] Արարատը կ'անուանէ բնակութիւն, կալուած թագաւորաց։ Նամանաւանդ թէ ի վիճակի է յայտնապէս զլուցելու թէ Հայոց թագաւորութիւնն իւր սկիզբը Արարատէն առնելով տարածուեցաւ։ Արարատն իւր անունը Արայէն առած է[4]։ Սա կէտին ալ մտադիր ըլլալու է որ Փաւստոսի[5] եւ Խորենացւոյ քով անանկ տեղեր կան, որոնցմէ կ'երեւայ թէ Հայերն ալ Արարատ ըսելով ամբողջ երկիրը կը հասկընային։ Գաւառին սկզբնական անուան՝ ամբողջ Հայաստանի վրայ տարածուելուն մէկ հնախօսական հետքը թերեւս կարելի է գտնել Ալարոդեանց անուան ու բնակավայրին մէջ. Հերոդոտոս[6] Ալարոդեան ըսելով կը հասկընայ հիւսիսային Հայաստանի մէջ ցեղ մը եւ իրաւամբ կ'ուզեն տեսնել այս ցեղին մէջ Ուրարդեանց կամ Արարատեանց անունը։ Այս հիման վրայ Ս. Գրոց մեկնիչները իրաւացի համարեցան ըսելը թէ Ս. Գրոց մէջ Արարատ անունը Հայաստանի հին անունն է. այս անունը կը տրուէր մասամբ թա-

---

1 Անդ, էջ 31 . . .։

2 Langlois, Collection des hist. anciens et mod. de l'Arm. I, p. 198 եւ Հրատ. Պատկանեան, Մոսկուա 1879, էջ 2։

3 Պատմ. Գ, իբ. Գ, իը. Բ, իբ։

4 Անդ, Ա, ժա. Ա, ժե, ժդ։

5 Փաւստոս, անդ, Գ. Ժ։ Մովսէս Խոր. Պատմ. Ա., իբ։

6 III, 94. VI, 79.

գաւորութեան մէկ նահանգին միայն եւ կը նշանակէր Հայոց ամբողջ թագաւորութեան մեծագոյն երկիրը։ Անձուկ մտօք կը հասկընային այս անունը Երեմեայ քով ԾԱ, 27։ Իսկ Եսայեայ քով ԼԷ, 38 եղածն ամբողջ երկրին անունը կը համարէին, այնպէս որ Թագաւորաց գրքին տուած նոյն տեղեկութիւնը Վուլգատան կրցաւ "երկիր Հայոց" թարգմանել[1], ինչպէս որ արդէն ըրած է յոյն բնագիրն Եսայեայ մէջ. Նոյն կերպով կը նշանակէ Codex syro-hexaplarisը։ Ի մասնաւորի նշանակալից երեւցած է Ասորեստանցւոց ոճը, որ ի սկզբան Ուրտու (Ուրարտու) կը կոչէր Հայաստանի հիւսի-արեւելեան մասը եւ վերջէն ամբողջ Հայաստանը կոչեց նոյն անուամբ[2]։ Այս յիշեալ նկատողութիւններով սա արդիւնքը ցուցուած համարուեցաւ թէ Ս. Գրոց Արարատը կրկին իմաստ ունի. մէյ մը կը նշանակէ ամբողջ Հայաստան երկիրը եւ մէյ մ'ալ անոր մէկ նահանգը. առանց սահմանները ճշդել ուզելու՝ այս նահանգը համարուեցաւ Արարատը կամ Այրարատը։ Նոյն կրկին իմաստն ենթադրուեցաւ նաեւ Հերոնիմոսի քով[3]։

Ասկէ ետքը Ս. Գրոց աշխարհագրութիւնը համարձակեցաւ քայլ մ'ալ առնուլ դէպ յառաջ։ Իմանալէն ետքը թէ Արարատը մեծ տէրութեան մը մէկ նահանգն[4] է, ալ հնարաւոր երեւ-

1 Կաուլէն ի Kirchenlexikon, I. 1226.

2 Անդ, ըստ Շրադէրի, Keilinschriften und Geschichtsforschung, S. 555.

3 Հմմտ. Migne, 24. էջ 389.

4 Հիմպել ի Theol. Quartalschr. 55. p. 348.

ցաւ անոր մասերուն վրայ ճշգագոյն տեղեկութիւններ առնուլն: Ս. Գրոց հին թարգմանիչներուն Երեմիայի մէջ Արարատ անունը պահելը, իսկ ընդհակառակն Թագաւորութեանց ու Ծննդոց մէջ Հայաստանով թարգմանելն՝ պարագայ մը չէ՞ ցուցնելու, որ իրենք արդէն Արարատը գաւառի եւ տէրութեան անուն կը համարէին եւ Երեմիայի մէջ եղած անուններն կարծեցին թէ գաւառներու անուն են: Ս. Գրոց մէջ Արարատայ հետ մէկտեղ յիշուած անունները չե՞ն կրնար մէկալ մասերը, գէթ նշանաւորագոյնները ցուցնել: Հնախօսական եւ ստուգաբանական հետազօտութիւններով գտան այս ենթադրութեան հաստատութիւնը եւ նմանապէս արդարացի ըլլալն այն ենթադրութեան, որ կ'ըսէր թէ հայկական երկիրներու անուններն՝ անցած մտած են Ս. Գրոց մէջ:

Միննի եւ Աշքանազ Արարատայ հետ մէկտեղ կը յիշուին: Շէգգ[1] իւր Հնախօսութեանը մէջ կը գրէ. "Այն ազգաց մէջ, զորոնք Երեմիա Բաբելոնի դէմ պատերազմի կը հրաւիրէ, կը յիշուի Արարատայ եւ Միննիի հետ Աշքանազ: Քանի որ Արարատ գաւառն էր միջին Երասխայ վրայ, որ հարաւէն դէպ արեւելք կը կտրէ Հայաստանը եւ Կիւրոսի (Կուրի) հետ Կասպից ծով կը թափի, քանի որ Միննի՝ հայկական Մինիւաս երկիրն է արեւելեան Եփրատայ վերին ընթացքին վրայ, հարկ է որ Երեմիայի ատեն ասոնց շրջակայքն Աշքանազ

1 Freiburg 1887, S. 358.

անունով երկիր մ'եղած ըլլայ, այնպէս որ այս երեքն ի միասին՝ Հարաւային Հայաստանի մէկ մասը կը կազմէին։" Ասքանազայ՝ Հարաւային Հայոց մէկ մասը կազմելուն ենթադրութիւնը կ'ապացուցանէ Աշէէն հայկական յատուկ անուան գոյութեամբն ու Հայացի ող մասնկով։

Միննին ալ Հայ երկիրներուն կարգը դասել ուզեցին։ Հայկական ազգանուններն ու քաղաքանունները իրենց մէջ կը բովանդակեն մոն վանկը, զ. օ. Մոնավազի, Մոնազկերտ ի Տուրուբերան, ինչպէս արդէն մտադիր ըրած է Սէն Մարտէն[1]։ Թերեւս ներելի ըլլայ մատնանիշ ընել նաեւ Մոնաճիհր, Մոնանաղի, Մոնդակունի անունները։ Կ'ըսուի թէ այս մոն վանկին մէջ պահուած ըլլայ հին Միննին։

Նոյն իսկ Արմէնիա անուան մէջ իբր ստուգաբանական կազմիչ մաս՝ Միննի կամ Ման անունը գտան։ Մինչ Շդրէք[2] (Բոխարտի) սեմական Հարմինիա (= լեռնաշխարհ Միննի[3]) անունէն մեկնելը ստուգաբանական խաղալիկ կը կոչէ, անդիէն Մուրատ[4] շատ հաւանական կը համարի նոյն մեկնութիւնը։ Արամերէնի մէջ շատ ցանցառ կը գործածուի հար բառը, այնպէս որ սեմական աղբիւրէ ստուգաբանելը շատ տարակուսական է (Նուստի)։ Չե՞նք կրնար հարի տեղ բակդրիական հարա կամ հարաիթի բառը դնել, որ լեռ, սար կը նշանակէ եւ իրապէս ալ ինչ ինչ

1 Քալեանեայ քաղ. անդ, էջ 3։
2 Անդ, էջ 104։
3 Քալեանք, անդ, էջ 3։
4 Մուրատ, անդ, էջ 18։

յատուկ անուանց մէջ կը գտնուի։ Այս պարագայի մէջ Armina կամ Arminiya սկզբնաբար կը նշանակէ լեռնաշխարհ Միննեանց եւ մատնացոյց կ'ընէ առնչութիւն մը ի մէջ Միննիի եւ Արմէնիայի, ի մէջ Միննիի եւ Արարատայ։

Շատ աւելի սուր կերպով նոյն բանը կ'ընէ հետեւեալ ստուգաբանութիւնը, որ խորունկ մտադրութեան[1] արժանացած է։ Այս ստուգաբանութիւնը Արմէնիա անունը Միննի եւ Արարատ անուններէն բաղադրուած կը դնէ։ Այս տեսութիւնը բնականաբար կ'ենթադրէ երկու երկիրներուն պատմական միութիւնը ի մի ամբողջութիւն։

Միննի — Արմէնիա հաւասարութիւնը հիմն է միանգամայն հին կտակարանի ասորերէն թարգմանութեան եւ Տարգումի, որ Երեմիայի ԾԱ 27 Միննին Հայաստան կը թարգմանեն։

Ման եւ Վան անուններուն նմանութեանը վրայ յեցեալ՝ հին Մանը Հայոց Վանայ շրջանին մէջ փնտռեցին[2]։ Այսպէսով կրցաւ Ալլիօլի համառօտիւ Արարատը, Միննին եւ Աքանազը հայկական գաւառներ անուանել. իսկ Գրաֆ[3] այս երկիրները կրցաւ հայկական լերանց մէջ Նրեք թագաւորութիւն համարիլ։ Ռիս[4] Միննին հայ ցեղ մը կը համարի Վասպուրականի մէջ։

1 Kirchenlexikon I. Sp. 1226.

2 Belck, Das Land der Mannäer. Verhandl. der Berl. G. f. Anthropol. 1894, S. 480.

3 Der Prophet Jeremias, Leipzig 1862, տես գլուխ ԾԱ, 27։

4 Bibelatla s. Namensverzeichnis.

Կնաբէնբաուէր[1] Լընորմանի վրայ հիմնուելով՝ Նայիրեայ ԾԱ, 27 կը համարի կոչ մ'առ թագաւորս եւ ազգս Հայոց։ Արարատ ու Մինին կը կազմեն Մեծ կամ Արեւելեան Հայաստանը, իսկ Ասքանազ՝ Արեւմտեան Հայաստանը։ Հումմէլաուէր[2] կը բաւականանայ Ասքանազայ համար ըսելով թէ «կրնաս ընդունիլ թէ Փոքր Ասիա կամ Հայաստան բնակած ըլլայ.» Մինինն որոշակի Արարատայ հետ հայկական երկիր կը համարի։

Մեր թափառման վերջը հասած՝ յետադարձ ակնարկ մ'արձակելով յիշեալ արդեանց վրայ՝ ստիպուած ենք խոստովանիլ թէ այս մեկնութիւնները Ս. Գրոց աշխարհագրութեան բոլորովին ապահով հետեւութիւնները չեն։

Մեկնութեան այս փորձերուն ատեն՝ Հայաստանի քրիստոնէութեան կամ Արշակունեաց ժամանակ տիրող աշխարհագրական-քաղաքական յարաբերութիւնները նոյն համարուած են այն յարաբերութեանց հետ, որ սրբազան հեղինակներուն օրերը կը տիրէին այն կողմերը։ Եթէ առ այս կ'ուզեն Մովսէս Խորենացին ու Փաւստոսը մատնացոյց ընել, այն ատեն սա նոր խնդիրը կը ծագի թէ ի՛նչ իրաւունքով ըրին այս ենթադրութիւնը։ Խորենացւոյ Հայոց պատմութիւնն այս անունը գործածած ատեն (Ա. իբ) բաւականէն աւելի յայտնի կերպով կը մատնէ թէ ինքը Ս. Գրքէն կախում ունի։ Քննադատ-

1 Մեկնութիւն Երեմ.։

2 Մեկնութիւն Ծննդոց, էջ 313։

ներուն այս պատմագրին հնութեան եւ աղբիւրներուն վրայ հետազօտութիւններ կատարելէն եւ հին գաղափարը մերժելէն ետքն ալ՝ Խորենացւոյն երկը մասամբ կը մնայ ամենահին, մեծարգի աւանդութեանց[1] ժողովածոյք մը։ Այս աւանդութիւնները պէտք ունին զտուելու, մաքրուելու, վերջին ժամանակի յարաբերութեանց յարմարցուած կտորներէն յստակուելու եւ այս պարագայի մէջ ալ չեն վկայեր վերի հաւաստութեան, որով Ս. Գրոց Արարատն յետնագոյն ժամանակի աշխարհագրութեան Հայաստանին դիմացը կը դրուէր։ Նոյնն ըսելու ենք միանգամայն այն փորձին համար, որով աշխատեցան Խորենացւոյ քով վկայութիւն մը գտնելու՝ ցուցընող թէ Արարատ գաւառանունն Հայաստան ալ կը նշանակէ միանգամայն։ Քանի որ Արարատայ տէրերը Հայաստանի վրայ թագաւոր էին, տարակոյս չկայ որ Հայաստանն Արարատայ տէրութեան երկիրն է։ Այս շրջաբանութենէ դուրս՝ երբեք Արարատն ամբողջ երկրին սեփական ու յատուկ անունն եղած չէ։ Պէտք ենք ըսել որ այս շրջաբանութիւնն ալ Ս. Գրքէն առնուելով ծագած է։ Նոյնն ըսելու ենք Ս. Յակոբ Մծբնացւոյ պատմութեան մէջ Փաւստոսի գործածած բացատրութեան նկատմամբ։ Այնտեղ ալ գործածուածն երկրին բնիկ կամ յատուկ անունը չէ, այլ լոկ շրջաբանութիւն մըն է եղածը, երբ կ'ըսուի. "Խաղաց գնաց . . .

---

1 Belck, Verhandl. d. Berl. G. f. Anthrop. 1895. Seite 606.

գալ հասանել ի լերինս Հայոց՝ ի լեառնն Սա-
րարատայ ի սահմանս այրարատեան տէրու-
թեանն[1] ։ „

Բայց եթէ նոյն իսկ Արշակունի թագաւո-
րաց ատեն իրապէս ամբողջ Հայաստանի վրայ
տարածուած ըլլար թագաւորաց կալուածին՝
Արարատ գաւառին անունը, սակայն առով
տակաւին ապացուցի ստուերն անգամ չէինք
ունենար թէ Ս. Գրոց մէջ յիշուած հին Արարատ
երկիրը կամ թագաւորութիւնը համանուն գաւ-
առ մ'ունեցած ըլլայ, եւ թէ գաւառի եւ թէ
թագաւորութեան անուն եղած ըլլայ միեւնոյն
ժամանակ։

Այս վախճանին համար՝ Ասքանազայ ու
Մինիի Հայաստանի վերաբերելուն գիմելը՝
նշանակութիւն չունի, վասն զի ամենեւին ապա-
ցոյց չկայ՝ Ասքանազայ հայ ցեղի մը կամ
գաւառի մ'անունն ըլլալը ցուցընող ։ Հայկեան
հնագոյն մատենագրութեան մէջ Ասքանազ
անունը կը գտնենք Կորեան[2] քով եւ Ս. Գրիգոր
Լուսաւորչի ցեղաբանութեան[3] մէջ ։ Բայց ներելի
է ենթադրել թէ այս երկու տեղերը տրուած
տեղեկութիւնը Ս. Գրքէն (Ծնն. Ժ, 3) եւ նոյն
ժամանակուան Ս. Գրոց մեկնութենէն առնուած

---

1 Անդ, Գ, Ձ, էջ 22 ։ Հմմտ. Langlois. I. p. 218.

2 Տես Կորիւն, Վենետ. 1894, էջ 7 ։ Հմմտ. Նաեւ Յովհ. Կաթող. պատմ. Մոսկուա 1853, էջ 10 ։

3 Սոփերք Հայկականք Է. էջ 31, տես Լանգլուա, անդ 25 ։ Հմմտ. Մ. Խոր. Ա, իբ ։ Այս ցեղաբանութեան հե-ղինակին նկատմամբ տես Ցուցակ Հայ. Ձեռագ. Մխիթ. Մատենագր. էջ 179 (801 եւն) ։

են. Երեմիայի ԾԱ, 27 տեղւոյն ակնարկութիւն մը կայ Խորենացւոյ քով (Ա, իբ)՝ նոյն աղբիւրէն առնուած։ կամ թէ արդեօք ասիկայ առաջնոց քով Արշակունեաց, արքունի տան եւ Ս. Գրիգորի տոհմին պարթեւական ըլլա՞լը կը ցուցնէր, ինչպէս երեւոյթը կարծես թէ կը ցուցնէ։

Միշտ տարօրինակ երեւոյթ է՝ Հայոց Ս. Գրոց վրայ յենլով՝ իրենք զիրենք Աշքանազեան կոչելը, մինչ Եզեկիէլ[1] ԻԷ. 14, ԼԸ. 9 եւ Ա. Մնաց. Ա. 3 Հայերը կ՚ըմբռնեն իբր որդիք Թորգոմայ. Հայերը Փաւստոսի եւ Ագաթանգեղեայ քովն ալ սանկ կը կոչուին։ Իսկ յետնագոյն պատմագիրներուն քով պայծառ է այս ըմբռնումն։ Եթէ Հայերը Թորգոմայ որդիքն էին այս անուան Ս. Գրոց մէջ ունեցած իմաստովը — նոյն անունը կրնար թերեւս յետնագոյն Մելիտինէի Տիլգարիմմուի եւ Հայոց նոյն ազգին ունեցած յարաբերութեան յիշատակը պահել, սակայն Յովհ. կաթողիկոս, Վարդան, Մովսէս Խորենացի հայ պատմագիրները Ս. Գրոց Թորգոմը կը հասկընան — այն ատեն չէին կրնար միանգամայն Աշքանազայ որդիքն ըլլալ, վասն զի Աշքանազ Թորգոմայ եղբայրն է ԾՆՆ. Ժ, 3 համաձայն։ Եթէ կարենայինք Աշքանազ անուան մէջ փռիւգիոյ հնագոյն բնակչաց՝ Ասկանացւոց՝ նշմարը գտնել, ինչպէս որ հաւանական կ՚ընէ Հայոց նախնական բնակավայրին եւ նախապատմական գաղթականութեան վրայ վարը յիշուելի տեսութիւնը, այն ատեն կը մեկնուէր Հայոց

1 Հմմտ. Քսենոփոն, Արշաւ. Դ. 5, 35.

Ասքանազ անունն առնուլը եւ հասկանալի կը դառնար անոնց՝ Ծննդոց (Ժ, 3) Ասքանազին ունեցած առնչութիւնը, սակայն առանց Երեմիայի ԾԱ, 27 յիշած Ասքանազեան թագաւորութիւնը Հայաստանի համազօր դնելու։ Ինչու որ Ազգաբանութեան ցանկին մէջ չենք կրնար յետմովսիսեան ազգեր փնտռել[1]։ Եթէ Հայ ցեղերու մէջ գտնուէին Երեմիայի Ասքանազեաններն ալ, այն ատեն հին ժամանակէ մնացած՝ Տայք, Սպեր, Արարատ, Մոկացիք, Խաղդիք երկրի ու ցեղի անուանց մէջէն՝ այս նշանաւոր ցեղին անունը հարկ էր որ աւելի ստէպ յիշուէր Հայոց յետնագոյն պատմութեան ու աշխարհագրութեան մէջ, մանաւանդ որ մարգարէն անանկ մեծ նշանակութիւն կու տայ Ասքանազին։ Ասոր ասանկ չըլլալը՝ նշան մըն է, որ Ասքանազ ժողովրդեան եւ Արարատայ թագաւորութեան չէր վերաբերեր։ Վերջապէս կը հարցընենք, ի՞նչ կ'ըսէ Ս. Գիրքն Ասքանազայ վրայ։ Ինչպէս որ Արարատեան թագաւորութեան մը վրայ կը խօսի, նոյնպէս եւ կը խօսի Միննիի եւ Ասքանազեան թագաւորութեան մը վրայ։ Ուստի այս երեքն ոչ թէ միացընելու է, այլ բաժնելու. Ասքանազը ճանչցընող մերձաւոր ճամբան Արարատ-Հայաստանի մէջէն չի տանիր, այլ առանց Հայաստան հանդիպելու կ'անցնի։ Նոյնը ըսելու է Միննիի նկատմամբ։

Միննի դիրքին նկատմամբ ալ կարելի չէ հետեւութիւն մը հանել հոն արմատական վանկով

1 Hoberg, Genesis S. 98.

կազմուած ազգանուններէն ու քաղաքանուննե-
րէն։ Ի հարկաւորութեան կարելի է մտածել
թէ Արմէնիա անունը յառաջ եկած ըլլայ Արա-
րատ ու Մինի անուններուն ի մի բարդուելովը,
եթէ ցուցուի որ Արարատ ու Մինի ի մի Հա-
յաստան ձուլուած են. ապա թէ ոչ՝ կարելի չէ
այս մտածումը։ Ուստի այս պատճառաւ ալ չի
կրնար իբր ապացոյց առ այս գործածուիլ։ Կա-
րելի է թերեւս ընդունիլ թէ Արմէնիան օտար
ժողովրդեան մը քով Հարմինիեա անունէն
յառաջ եկած ըլլայ, բայց մասնականի իջնալով՝
չի թոյլատրեր աշխարհագրական յարաբերու-
թեանց մասին ընդունելի հետեւութիւններ
հանել։ Իր կազմիչ մասանց նայելով՝ կը նշա-
նակէ Մինեանց լեռնաշխարհ՝ առանց անոր
տարածութիւնն ու քաղաքական յարաբերու-
թիւնները պարզելու։ Նմանապէս պատմական
պատճառներն անընդունելի կ'ընեն Վան եւ
Ման = Մինի հաւասարութիւնը, ինչու որ,
ինչպէս պիտի տեսնենք, Վան կը վերաբերէր
Այրարատայ, որուն քով գոյութիւն ունէր եւ
Ման = Մինի։ Ս. Գրոց սորի Թարգմանու-
թեան եւ Տարգումի Մինին Հայաստան թար-
գմանելն ամենեւին պատմական վկայութիւն չէ,
այլ լոկ փորձ մըն է Մինին մեկնելու. եւ այս
փորձն այնչափ կ'ապացուցանէ, որչափ քննելի
այն պատճառներն, որոնց վրայ կեցած է։ Այս
յիշեալ պէսպէս կէտերուն վրայ հայեացք
մ'արձակելով՝ կը տեսնենք որ ասոնք ոչ թէ
միայն հեռու են իրարու նպաստելէ եւ վերջնա-

կան արդիւնքի մ՚առաջնորդելէ, այլ հակառակ են իրարու։ Հայաստան ըսելով Միննի հասկըցողը՝ չի կրնար այլ եւս Հայաստանն Արարատ անուանել. իսկ Արմէնիա անուան կարծեցեալ կազմութեան հետեւելով՝ նոյնը Արարատ եւ Միննի անուններէն յառաջ եկած կարծողը՝ ստիպուած է Ասքանազը անկէ դուրս վտարել. միայն թէ ասով ուրացած կ՚ըլլայ այն սկզբունքը, որ իւր հիմն է։ Ասոնց հետ Ասքանազը միացընողը պէտք է որ վերյիշեալ կարծիքները մերժէ։ Արարատը միեւնոյն ժամանակ թէ՛ գաւառի եւ թէ՛ երկրի անուն համարողը՝ ստիպուած է սխալ հրատարակել աստրական ու տարգումեան թարգմանութիւնը։

## 3.

Մինչեւ հիմայ ըսուածներն աչքի առջեւ ունենալով՝ իբր ապահով եւ ստոյգ ընդունելու ենք թէ Արարատը Հայաստանի մէջ փնտռելու ենք եւ թէ Երեմիայի Ասքանազն ու Միննին Հայոց աշխարհին եւ Ասորեստանի դրացի էին։ Ինչու որ Շրադէր[1] իրաւամբ ըսած է թէ անհեթեթութիւն կ՚ըլլար ենթադրելը թէ մարգարէն Բաբելոնի դէմ կը հրաւիրէ ու կը կոչէ հեռաբնակ փոքրիկ ժողովուրդ մը։ Իսկ անուններուն փոփոխութիւն կրելն եւ Արարատայ հետ մէկտեղ յիշուած երկու թագաւորութիւններուն եւ ժողովուրդներուն գրեթէ անհետ կորսուած ըլլալը՝ յայտնի նշան կրնան համարուիլ թէ

1 Keilinschriften u. Geschichtsforschung. Giessen 1878, S. 160.

Երեմիայէն ետքը Հայոց աշխարհին քաղաքական պատկերն ու ազգացն աշխարհացոյցը մեծամեծ յեղափոխութիւններով՝ ընդարձակածաւալ կերպարանափոխութիւն կրած են։

Ուրիշ ամէն բան կը մնայ ենթադրութիւն եւ կցկցանք, մինչեւ որ պատմութիւնը այն ժողովրդոց վրայէն անցելոյն քողը բանայ եւ թոյլ տայ մեզ ակնարկ մ'արձակել այն յարաբերութեանց վրայ, որ երբեմն ներկայ էին Եսայեայ եւ Երեմեայ կամ մարգարէական հոգւովն ներկայ տեսնուած ապագայ։

Հնախօսական հետազօտութիւնն անցելոյն այս քողը հիմայ քիչ մը պարզեց։ Այս հետազօտութեան հետեւելով՝ կը ստանանք այն արտաքին ապացոյցները, որ կը ցուցընեն թէ որչափ իրաւացի էր վերոյիշեալ մեկնութեանց քննութիւնն՝ որ իրեն հիմ ունէր ներքին պատճառները կամ ապացոյցները՝ եւ ասով գէթ մինչեւ որոշ աստիճան մը՝ պատմութեան գետնին վրայ կեցած կը ծանօթանանք Ս. Գրոց յիշեալ տեղերը շօշափուած աշխարհագրական եւ քաղաքական յարաբերութեանց։ Այս է հին-հայկական կամ նախահայկական արձանագրութիւններուն եւ բեւեռագիրներուն հետազօտութիւնը՝ որ իրենց լուսովը հազարաւոր տարիներէ ի վեր Ս. Գրոց Արարատ անունը պատող մթութեան խաւարը կը փարատեն։

Շրադէրի այս աղբիւրներուն օժանդակութեամբը Ասորեստանի[1] աշխարհագրութիւնն

---

1 Zur Geographie des assyr. Reiches. Sitzungsberichte der Berliner Akademie 1890.

երեւան հանելէն ու Keilinschriften und Geschichtsforschung անուն գործոյն մէջ Առաջակողման Ասիոյ աշխարհագրական յարաբերութեանց ծանօթութեանը մեծապէս նպաստելէն ետքը՝ Նորագոյն ժամանակներս ձեռնարկեց Մ. Շտրէք՝[1] Բաբելոնի եւ Ասորեստանի բեւեռագիր արձանագրութիւններուն միջնորդութեամբը այսօրուան Հայաստանը, Քրդաստանն եւ Արեւմտեան Պարսկաստանը՝ աշխարհագրական գիտութեան լոյսը հանել:

Գիտնականաց եռանդը յաջողեցաւ միանգամայն՝ ասորեստանեայ աղբերաց Ուրարտու-Արարատ անուանած երկրին մէջ գտնուող բեւեռագիր արձանագրութեանց իմաստն ալ առեղծուլ: Ի հարկէ երկայն տեւեց, մինչեւ որ հոս ալ կարելի եղաւ ըսել թէ քարերը կը խօսին: Եւ դեռ շատ կողմանէ՝ այս խօսիլը թոթովել մըն է: Արդէն 1828ին Շուլց[2] Սէն-Մարտէնի միջնորդութեամբը Հայաստան խաւրուելով եւ Նինուէի գրական գանձուց ծանօթանալէն եւ պարսիկ սեպագրութեանց կար-

---

1 Das Gebiet der heutigen Landschaften Armenien, Kurdistan und Westpersien nach den babylonisch-assyrischen Keilinschriften. Z. A. 1898 f. Տես այս գործոյն հայ թարգմանութիւնը, որ "Հայաստան, Քրդաստան եւ Արեւմտեան Պարսկաստան՝ Բաբելական — ասորեստանեայ սեպագրերու համաձայն" անուան տակ մասամբ "Հանդէսի" մէջ հրատարակուած է եւ մնացեալն ալ՝ որ այս օրերս լոյս տեսաւ, կը հրատարակուի: Ապագային՝ առանձինն հատորի մը մէջ լոյս պիտի տեսնէ:

2 Lehmann, Das vorarmenische Reich von Wan. Deutsche Rundschau 1894, LXXXIII., 3.

կացուելէն յառաջ՝ 40 բեւեռագիր արձանագրութիւն ընդօրինակած էր, մինչեւ որ քուրդ-ցեղապետի մը դաւերուն զոհ երթալով՝ իր ըրած թանկագին գիւտերը կեանքովը վճարեց։ Անոնք Journal Asiatiqueի մէջ հրատարակուեցան[1]։

Գիւյար եւ Սէյս բախտն ունեցան այս շատ հին յիշատակարանները կարդալու առաջին բանալին գտնելու։ Արդիւնքները ասոնցմով զբաղելու շահագրգռութիւնը աւելցուցին եւ սկսան այս հին պատմագրութեան[2] մնացորդները մեծ զոհողութեամբ քննելը յառաջ տանիլ։ Միւլլէր — Սիմոնիս եւ Հիւվէրնա ձեռնարկեցին հետազօտելու նպատակաւ դժուարին ու վտանգաւոր ուղեւորութեան մը։ Ի մասնաւորի շատ յաջող եղաւ Բէլքի գործունէութիւնը, որ երկայն տարիներ Հայաստանի մէջ Սիմէնսի բովերուն քիմիագէտն ըլլալով՝ առիթ ունեցած էր երկիրն ու բնակիչները ճանչնալու. Բէլք իր ծանօթութիւնները գործածեց անձնանուէր հետազօտութիւններով՝ գիտութեան առջեւ սեպագիր մատենագրութեան նոր աղբիւրներ բանալու։ Չէ թէ միայն յաջողութիւն ունեցաւ ատաղձը զգալի կերպով աճեցընելու, այլ եւ զանոնք հասկընալու. համար տեսութեան նորանոր ու յարմար կէտեր գտաւ՝ ցուցընելով թէ զասոնք առեղծելու համար ապահով առաջնորդ է՝ նախահայկական սեպագիր արձանագրութեան մը դիրքն որոշելը կամ ճշդելը։

---

1 J. A. 1828, II., p. 161 ff.

2 Հմմտ. “Հանդէս Ամսօրէի„ մէջ՝ Հ. Տաշեանի յօդուածը 1899, էջ 16 եւն։

Այս հետազօտութիւնը Ս. Գրոց Արարատ անուան մեկնութեանը համար շատ կարեւոր տեղեկութիւններ կու տայ, որ կը լուսաբանեն Արարատայ աղերսը թէ առ աշխարհն Հայոց եւ թէ առ Միննի։ Ասքանազայ վրայ տիրող խաւարը տակաւին փարատած չէ։ Ասքանազը Բիւթանիոյ ասկանեան երկրին մէջ փնտռեցին[1]։ Վերը տեսանք թէ Շրադէր հակառակ է ասոր։ Այլք Ասքանազը Սեւ եւ Կասպից ծովու եզերքները կը փնտռեն։ Քաղդէական Տարգումը Ասքանազայ տեղ Ադիաբենէ[2] կը դնէ։ Կրնա՞նք Ասքանազը նոյն համարիլ սեպագրութեանց մէջ Իսկուզացիք կամ Աշկուզա ըսուածներուն հետ, զորոնք Ասարհադդոն կը յիշէ իբր Նիզակակից Մաննայի[3]։ Կ՚երեւայ թէ կրնայ ըլլալ, վասն զի թէ այս քաղաքական յարաբերութեան կը համապատասխանէ եւ թէ այն դիրքին, զոր Երեմիա նոյն ժողովրդեան կ՚ընծայէ։ Այս պարագայի մէջ ասոնց բնակավայրը Հայաստանէն դուրս ըլլալու է։ Ինչու որ Իսկուզացիք Ասորեստանի ստէպ սպառնացող հիւսիս-արեւելեան թշնամիներէնն են. այս թշնամեաց խմբին կը վերաբերին Սապարդացիք, Գիմմերացիք եւ Մադաի-ացիք[4]։ Վինկլէր[5] այս Աշկուզան կը դնէ Ասորես-

1 Schröder, Keilinschriften und Geschichtsforschung, S. 160.

2 Loch und Reischl ի Մեկնութեան Եր. ԾԱ. 27։

3 Մուրատ, անդ, էջ 16։

4 Շրէդէր, պատանձինն հրա. էջ 96։

5 Der alte Orient. I, 1. Die Völker Vorderasiens, Seite 29.

տանի արեւելակողմը շատ հեռուն։ Ըստ Սէյսի ասոնց երկիրը կ'իյնայ արեւմտեան Պարսկաստանի այսօրուան Արդիլան ըսուած գաւառը[1]։ Ասոնց Քարտատուա Թագաւորը՝ Հերոդոտոսի Պրոտոթիւեսը՝ ազգականութեամբ կապուեցաւ Ասորեստանի Թագաւորական տան։ Եթէ Աշկուզա եւ Ասքանազ նոյն ժողովուրդն են, այն ատեն Երեմիա ԾԱ, 27 երեք Թագաւորութիւններն անուանելովը նշանակած է Բաբելոնի այն Թշնամիներն, որ հիւսիսակողմն էին, եւ լիուլի շեշտած է վտանգին ծանրութիւնը՝ անուանելով Ասորեստանի հիւսիսային-արեւմտեան ծագը՝ Արարատը, հիւսիսային-արեւելեան ծագը՝ Ասքանազը, եւ մէջտեղը՝ Միննին կամ Մաննաին, ըստ այսմ երեք պետութիւն՝ որոնց ծանրութիւնը — բաւականէն աւելի զգացած էր Բաբելոնէն պարտեալ Ասորեստանը եւ որոնց բարեկամութիւնն այնպէս մեծ երեւցած էր իրեն։ Այս պարագային մէջ՝ Ասքանազը վերջէն Հայաստան ըսուած երկիրին սահմաններէն դուրս ըլլալու է։

Եւ Միննացիք կրնային մեծ յարմարութեամբ հիւսիսային Թշնամեաց միջին Թագաւորութիւնը ներկայացընել։ Մանը՝ սեպագիր արձանագրութեանց համաձայն՝ Արարատայ մէկ

---

1 Մարքուարտ, անդ, էջ 17։ Եթէ Հայոց՝ իրենց տուած Ասքանազեան անունն ազգային է եւ յաջորդ ժամանակներու Փռիւգիային Ասկանեանց անուանը հետ յարաբերութիւն ունի, եւ Իսկուզացիք Երեմիայի քով նոյն Ասքանազեան իմաստով կը կոչուին, այն ատեն ըսելու է թէ Հայերն ու Իսկուզացիք ցեղակից են, բայց Արարատէն քաղաքականօրէն ու աշխարհագրօրէն զանազանուելու են։

մասը չէր, այլ անոր արեւելեան կամ հարաւ-արեւելեան դրացին։ Աչքի առջեւ բերենք համառօտիւ անոր պատմութիւնն ու դիրքը։

Հոմմէլի[1] ըսածին նայելով՝ յոյն ուղիղ թարգմանութեան համաձայն Յովբայ երրորդ-բարեկամը Սովփար Միննացւոց մէկ թագաւորն էր։ Շորեք[2] այս թագաւորութեան հնութեան նկատմամբ կ'ըսէ. Ստոյգ չէ թէ Գուդէայի քով (B. Col. VI., 4) յիշուած Մենուան նոյն է մեր Ման — Միննիի հետ, թէ ուրիշ երկիր կամ լեռ մըն է։ Եթէ նոյն է, այն ատեն Մանի գոյութիւնը մինչեւ 3դ հազարամեակ վեր կ'ելլէ։ Սեպագիրներուն մէջ առաջին անգամ Սալմանասար Բ.ի ատեն 859—824 Մաննեանց կը հանդիպինք։

Բէլք[3] մաննեան երկրին վրայ յառաջ գոյութիւն ունեցող տէրութեանց անհետանալուն ժամանակէն կը հետեւցընէ, թէ Մաննեանք՝ վերջին անգամ հին տէրութեանց յիշուած 857/56 թուականին եւ Մաննեանց առաջին անգամ յիշուած 830 թուականին մէջ եկած են այն երկիրը, ուր զիրենք գիտեն ասորեստանեայ բեւեռագիր արձանագրութիւնները։ Զայս կը հաստատեն նաեւ նախահայկական կամ խաղդեան արձանագրութիւնները։ Ինչու որ խաղդէացւոց թագաւորներուն՝ Մաննեանց դէմ

1 Geschichte des alten Morgenlandes, S. 101.

2 Շորեք, անդ, էջ 105։

3 Das Reich der Mannäer. Verhandlungen der Berl. Ges. für Anthropol. 1898, S. 484.

ըրած արշաւանքներուն վրայ թողած ամենահին տեղեկութեանց մէջ ալ երբեք չեն յիշուիր Ջամուայի կամ կեռուրիի հնագոյն թագաւորութիւնները։ Այստեղ յիշելու ենք որ արդէն Հոմմէլ[1] կ՚ըսէ թէ Ասուրնասիրբաղ գրաւելով ու նուաճելով մտած է Մաննաի. այստեղ երկիրը հասկընալու է աշխարհագրօրէն եւ ոչ թէ քաղաքականօրէն։

Կ՚երեւայ թէ Մաննեանք արեւելքէն գալով մտած են իրենց երկիրը։ Իրենց այս արշաւանքը դադար առաւ Ուրմիոյ լճին հարաւային, հարաւ-արեւելեան եւ հարաւ-արեւմտեան եզերքին շուրջը գտնուող երկիրներուն գրաւմամբը։ Մերձաւորապէս Տաշթէփէ եղած ըլլալու է նոյն պետութեան կենդրոնը։ Բէլք[2] Երկրին սահմանները գծած ատեն՝ Մանը կամ Միննին (Մաննաի) վերջին Հայաստան ըսուած երկրին աշխարհական ե-մեծա մասամբ նաեւ քաղաքական սահմաններէն դուրս կը դնէ։

Քիչ մը տարբեր կը գծէ այս տէրութեան սահմանները Շտրէք[3], այնպէս որ տէրութեան թէեւ ոչ ամբողջութիւնը, բայց ինչ ինչ կտորները վերջէն Հայաստան ըսուած երկրին մասը կ՚ըլլան։

Շտրէք Մանը՝ Վանայ ծովուն հարաւ-արեւելեան կողմն ու Ուրմիոյ լճին արեւմտեան

1 Անդ, էջ 482։

2 Անդ, 1899, էջ 142, ուր եւ յառաջ կը բերուին Ասորեստանցւոց իրաց հմուտ անձանց յետականս միաբան սահմանները։

3 Geschichte des alten Morgenlandes, S. 114.

կողմն այնպէս մը կը դնէ որ Հարաւէն Հուբուշկիա, արեւելքէն Կիրզան եւ Հիւսիսէն Ուրարտու սահմանակից կ'ըլլան։ Գրեթէ այսօրուան Շատախ, Խոշաբ եւ Բաշկալա երկիրներն ու անոնց աւելի հիւսիսային կողմերը կը ծածկեն Մանը։ "Արեւելեան կողմանէ՝ յատուկ մտօք Մանի սահմանակից էր Զիկկիրտու Նահանգն... եւ արեւելեան կողմանէ Անդիան, այսինքն Երասխայ դաշտը Խոյի եւ Մարանդի քով։" Շորէք կը կարծէ թէ Վանայ ծովուն քով Նահանգ մըն ալ Մաննեան երկիր էր[1]։

Մանի ընծայուած այս դիրքը կը ցուցնէ որ այնպիսի երկիր մը եղած է, որ վերջէն Հայաստան ըսուած աշխարհին մէկ մասն է եղած։ Մանի թագաւորութիւնը բոլորովին զատ եւ տարբեր է Արարատէն։ Մանը վերջէն Հայաստան ըսուած երկրին կը վերաբերի ոչ թէ իբր կեդրոնացեալ կամ ամբողջութիւն կազմող նահանգ մը, այլ բոլորովին փոփոխուած (ազգագրական ու) քաղաքական յարաբերութեանց ազդեցութեամբ։ Նոյն իսկ Ման անունն անհետ կորսուած է։ Մանն այնպէս հայկական նահանգ մըն է, ինչպէս տաճկական է փղշտացւոց պետութիւնը։

Այս պետութեան պատմութիւնը արիւնահեղ պատերազմներ կը պարզէ մեր աչաց առջեւ։ Մինչ Արարատն երկիրներ նուաճելու մարմաջէն մղուած՝ հիւսիսային արեւմուտքէ դրացի տէրութեան վրայ յարձակեցաւ, Ասուր

1 Շորէք, անդ, էջ 99։

կատաղի մոլեգնութեամբ արեւելքէն դիմեց յանդուգն թշնամւոյն վրայ՝ որ համարձակած էր գրաւել Նինուէի հարկատու տէրութեանց շատերուն երկիրները։

Մանեանց տէրութիւնը կրցաւ իր անկախութիւնը պահել Արարատայ դէմ։ Խալդեան արձանագրութեանց մէջ երբեք չենք հանդիպիր Իզիրտու կամ Զիրտու անուան, որ մայրաքաղաքն է Մանեանց։ Ապացոյց մը, որ Արարատ երբեք նոյն քաղաքն առած չէ[1]։ Ասորեստանցւոց յարձակումներուն հետեւութեամբը ստիպուեցաւ Ման մերձենալ ու միանալ իր արեւմտակողմը գտնուող պետութեան եւ այն՝ Ազայի՝ Սարգոնի հաւատարմին սպանուելէն եւ արարատասէր Բագդատտի թագաւորին աթոռը նստելէն ետքը։ Այս Բագդատտիին յաջորդեց Ուլլուսունա։

Սաղմանասար Բ 859—825 Մանեանները ստիպած էր հարկ տալու. Նոյն հարկը կը տրուէր Սամսիրհամման Բ.ի [824—812] ատեն ալ։ Ամէնէն աւելի Մանեանները կը յիշեն Սարգոնի 722—705 արձանագրութիւնները։ Այս ժամանակս էր որ Ման մտաւ այն Նիզակակցութեան մէջ, որ Արարատայ առաջնորդութեան տակ՝ Ասորեստանի դէմ կազմուեցաւ։ Այս Նիզակակցութենէն օգուտ մը չտեսաւ։

Այս ատենս Ասորեստանի Մանի հետ ունեցած յարաբերութեան վրայ խօսող տեղեկութիւնք կը պատմեն թէ Բագդատտի Սարգոնէ

1 Բէլք, անդ։

մորթազերծ եղաւ եւ Ուլլուսունու ստիպուեցաւ հպատակիլ, եւ թէ Սարգոն կուսակալ մը, այսինքն Մանի ասորեստանցի մէկ հարկատու թագաւորը՝ Դախուկկի անունով՝ գերի ընելով տարաւ. Արարատայ՝ Մանի ձեռքէն առած երկիրները դարձեալ Մանեանց տրուեցան Ասորեստանցիներէն՝ որ Արարատայ ալ յաղթած էին, եւ վերջապէս հաստատուեցաւ հպատակութեան հին աղերսը[1]։

Ասուրբանիպալայ (667—627) ատեն Մանի թագաւորն էր Ահսէրի։ Այս անձը ջանաց իր անկախութիւնը պահելու, մանաւանդ թէ փորձեց իր իշխանութիւնը դէպ արեւելք եւ հարաւ տարածել եւ յաջողեցաւ ալ՝ ժամանակաւ Ասորեստանի վերաբերող ինչ ինչ քաղաքներ նուաճել, ինչպէս կը տեսնուի ասորեստանեայ արձանագրութիւններէն[2]։ Ասուրբանիպալ ասոր դէմ իր չորրորդ արշաւանքն ըրաւ։ Ահսէրի ստիպուեցաւ փախչիլ։ Հպատակներն անոր դէմ ոտք ելան։ Ահսէրի սպաննուեցաւ։ Իր որդին՝ Ուալլի՝ թագաւորութիւնը ձեռք ձգեց, բայց ստիպուեցաւ դարձեալ Ասորեստանցւոց հպատակիլ եւ յանձն առնուլ՝ աւելի հարկ տալը։

“Աստ եւ այժմ Մանի պետութեան յետանագոյն վիճակին վրայ ոչինչ գիտենք[3]։„ Իրաւամբ կրնանք ընդունիլ թէ այս յանդուգն ժողովուրդը,

1 Շտրէք, անդ, էջ 95 եւն։ Հոմմէլ, անդ, էջ 133։
2 Շրադէր, անդ, էջ 212։
3 Բէլք, անդ։

որ իր ազատութիւնը պահելու համար մշտատեւ պատերազմի մէջ էր Ասորեստանի դէմ՝ թէեւ ոչ միշտ յաջողութեամբ, նորէն զօրացաւ, երբ Ասորեստան՝ իր տեւողութեանը վերջերը տկարացած՝ Բաբելոնէ նուաճուելու մօտ էր. այնպէս որ կրցաւ մարգարէն Մանը անանկ տէրութիւն մը ճանչնալ, որ կոչուած էր Բաբելոնի ալ սպառնալ ու Բաբելոնը վտանգել։

«Է. դարուն՝ հնդիկգերմանական խմբերուն արշաւելովը թերեւս Ման բնաջինջ եղաւ կորսուեցաւ[1]։»

Եէնսէնի[2] ըսածին նայելով՝ Բուլղարմադէնի արձանագրութեան համեմատ՝ ասոր հեղինակը Սիւեննացին՝ չէ թէ միայն իշխողն է արեւմտեան կողմանէ Կիլիկիոյ, այլ եւ հիւսիսային կողմանէ Մելիտէնէի, արեւելքէն Կարկէմիշի, եւ թերեւս նաեւ Մանուայի հիւսիսային Ասորիքի մէջ։ Աս արձանագրութիւնը՝ Ասորեստանի խորտակելէն ետքը՝ հատեան իշխանութեան ծաղկելու ատենէն է։ Կիաքսար այլ եւ այլ մարական ու մաննեան իշխանութիւնները իրեն հպատակեցուց[3]։

Այս սակաւաթիւ տեղեկութիւնները կը ցուցընեն, որ չենք կրնար Մանը կամ Մաննեանց տէրութիւնը կամ Մինիին Արարատայ մէկ մասը կամ մէկ նահանգը համարիլ։ Առ առաւելն առժամանակեայ կերպով՝ ստիպուած առաւել

---

1 Բէլք, անդ։
2 Hittiter und Armenier. Strassburg 1898, S. 193.
3 Հոմմէլ, անդ, էջ 156։

կամ նուազ գաշնակցութիւն ունէր Արարատայ հետ, պահելով սակայն անոր հանդէպ՝ միշտ իր անկախութիւնը։ Ընդհակառակն կրկին ու կրկին անգամներ եւ երկայն ատեն կախում ունեցած Ասորեստանէ։ Ինչպէս որ աշխարհագրօրէն պէտք ենք Մանը՝ վերջէն Հայաստան ըսուած երկրէն՝ Բէլքի գծած սահմանին հետեւելով գրեթէ ամբողջապէս, իսկ Շտրէքի գծածը աչքի առջեւ ունենալով՝ մասամբ անջատել, նոյնպէս ալ քաղաքականօրէն Ս. Գրոց արարատեան թագաւորութեանը հետ քաղաքական ամբողջութեան ձուլելու չէ։ Այս ըսածնիս կ'արժէ Մանի պատմաբանօրէն ապացուցանելի գոյութեան սկիզբէն մինչեւ այն ատեն, ուր Արարատայ համար ալ կրնանք զրուցել "Իրենց թագաւորութիւնը ուրիշներուն տուին եւ իրենց փառքը՝ օտարածին ազգի„ (Սիրաք)։

Փառօք ճոխ պատմութիւն է Արարատայ պատմութիւնը, որուն կը դառնանք հիմայ՝ Ասքանազայ ու Մինիի՝ Հայաստանի եւ Արարատայ հետ ունեցած յարաբերութիւնը պարզել փորձելէն ետքը, որպէս զի մեկնենք Արարատայ յարաբերութիւնն առ Հայս։

Ասորեստանեայ արձանագրութեանց համաձայն Ուրարտուի տէրութիւնը այն երկիրներուն մէջն էր, զոր մատնանիշ կ'ընեն Եսայի, Տովբիթ (եւ Երեմիա) եւ զորոնք Ս. Գրոց թարգմանութիւնները մասամբ իբր հայկական երկիր կը նշանակեն։ Առաջին անգամ Ուրարտու անունն իբր 930ին Ասուրբանիպալայ մենաքար

արձանագրութեանց մէջ կը տեսնենք. յաջորդ դարերուն գրեթէ այլ եւս ասորեստանեայ տարեգրութիւններէն չ'անհետանար անունս։ Այն երկիրը, ուր Ուրարտուն էր, հնագոյն ժամանակներն՝ այսպէս Տիգղատ Պիղեսար Առաջնոյն (1125—1105) ատեն՝ ասանկ չէր կոչուեր, այլ Նաիրի ըսուելով աս ալ մէկտեղ կը հասկըցուէր։ Նաիրի հայկական ամբողջ հարաւարեւմտեան երկրին անունն է՝ Հուբուշկիայէն կամ Նիմմէէն մինչեւ Դաիաէննիէ։ Վանայ լիճը կ'ըսուէր վերին ծով Նաիրիի, իսկ Ուրմիոյ լիճը՝ վարի ծով Նաիրիի[1]։

Նախահայկական պատմութիւնը հետազօտողին՝ նոյն ժամանակը ցոյց կու տան բնիկ արձանագրութիւններն ալ՝ հզօր թագաւորներու ատեն եւ Ասուրի դէմ պատերազմներով պետութեան տարածուելուն վրայ լիուլի տեղեկութիւն հաղորդելով։ Սամսիրհաման Դ.ի (824—812) ժամանակակցին՝ Սարդուրիի ատենէն են առաջին արձանագրութիւնները՝ ի սկզբան ասորեստանեայ սեպագրութեամբ եւ սեմական ասուրերէնով, մինչ Սարդուրիի յաջորդները իրենց գաւառաբարբառը կը գործածեն իբր գրաւոր լեզու։ Բնիկ արձանագրութիւններն Ասորեստանցւոց Ուրարտու անուանածը՝ Բիաինա կը կոչեն։ Աս Բիաինա անունէն զատ՝ նոյն արձանագրութեանց մէջ երկրին ու ժողովրդին համար Խաղդիք եւ Խաղդէացիք անուններն ալ կը

---

1 Ղոբէտ, անդ, էջ 14։

գործածուին[1]։ Ժողովրդեան գլխաւոր աստուածութիւնն ալ Խաղդիք եւ Խաղդիս կը կոչուէր։

Այս կրկին աղբիւրներն եւ պետութեան պատմական դիպացը ծանօթութիւնը թոյլ կու տան մեզ բաւական որոշ կերպով երկրին սահմանները գծելու։

Տարակոյս չկայ որ պետութեան սկզբնաւորութեանը վրայ մութ ու խաւար կը տիրէ։ Շրադէր[2] Ուրարտեանց սկզբնական բնակավայրը կը դնէ միջին Երասխայ վրայ։ Այն տեղէն ժողովուրդը դէպ ի Հարաւ քալելով հասած է Վանայ լճին եզերքներն ու հոն պետութիւն մը հաստատած, որուն առաջին վաւերագրով ապացուցեալ թագաւորը եղած է Լուտիպրիս։ Բէլք[3], որ թագաւորութեան սկզբնաւորութիւնը նոյն ժամանակէն կը համարի, բնակչացը սկզբնական բնակութիւնը Խոտուրդաղի եւ Վանայ լճին միջեւ եղած կողմերը կը գտնէ։ Ուրարտեան Արամէ թագաւորին (իբր 850°) անուան՝ հիւսիսային Ասորիքի հատեան երկիրներէն մէկուն իշխանին անուանը հետ ունեցած նմանութենէն եւ Կումմուխի գլխաւոր աստուածութեան՝ Միտաննիի՝ Ուրարտուի մէջ ալ պաշտուելէն հետեւցուցին՝ թէ պէտք է Արամէի ատեն Ուրարտուի

1 Շրադէր. անդ, էջ 81։ Lehmann, Das vor-armenische Reich von Wan. Deutsche Rundschau 1894, LXXXI., S. 402 f.

2 Schrader, Zur Geographie des assyr. Reiches, Seite 333.

3 Belck, Das Reich der Chalder. Verhandlungen der Berl. Ges. für Anthropol. 1894, S. 486.

մէջ տիրող ժողովուրդը՝ հիւսիսային Ասորիքի տէշուբեան ժողովրդեան հետ առնչութեան մէջ դնել, եւ նմանապէս հետեւցուցին թէ Սարդուրի Առաջնով նոր հարստութիւն մը սկսած ըլլայ, եւ թէ տիրող եղած ըլլայ հին տէշուբեան ցեղին մէկ նոր խումբը՝ հիմը դնելով Արարատայ ապագայ մեծութեանը։ Բայց Շտրէքի ըսածին նայելով՝ այսպիսի կարեւոր եզրակացութեանց յանգելու համար ոչ ասորեստանեայ եւ ոչ ալ բնիկ արձանագրութեանց տեղեկութիւնները բաւական են[1]։ Խաղդեանց ազգագրական հանգամանքը տակաւին ծանօթ չէ։ Կ'ըսուի թէ ասոնց լեզուն վրացերէնի մօտ ըլլայ եւ առհասարակ ուրալալտայեան լեզուախմբին ցեղակից[2]։ Հիւբշման[3] խնդրոյս առթիւ կ'ըսէ. Թէեւ Տոմաշէկ, Բէլք եւ Լէման աշխատած են, սակայն Խաղդեան լեզուին կաւկասեան նկարագիրը մինչեւ հիմայ ապացուցուած չէ։

Ուրարտեան տէրութեան իւր առաւօտեան մթութենէն ելլելուն հետ՝ կ'աճի պատմականօրէն վկայուելուն պայծառութիւնը եւ երթալով կը լուսաւորուի։

“Սեպագրերուն[4] մէջ երեւան ելլելէն ետքը կը տեսնենք որ Ուրարտացիք կամաց կամաց դէպ ի արեւմուտք ու հարաւ կը տարածուին եւ կ'ըլլան միապաղաղ մեծ ու հզօր տէրութիւն

1 Անդ, էջ 85։

2 Lehmann, Deutsche Rundschau, անդ։

3 Arm. Gramm. I., S. 405 f. Sandalgian, l'idiome des inscriptions cuneiformes urartiques. Rome 1898.

4 Շտրէք, անդ, էջ 86։

մը՝ փտանգաւոր ախոյեան հանդիսանալով Ասորեստանցւոց։ Ասուրնասիրպալ կ՚ըսէ թէ Ուրարտու մինչեւ Սուբնատ կը տարածուէր։ Հիւսիսարեւմուտքէն սահմանն էր Դաիաենի ու անոր հարաւակողմը գտնուող Սուհմէ եւ Էնզի նահանգները։ Բալուէ սկսեալ սահմանաբաշխն է Արսանիա, վերն՝ արեւելեան կողմը՝ Նալ լեռնաշխարհն է որ ուրարտեան Տարօն դաշտը կը բաժնէ Կիրհու ու Ուլլուբա երկիրներէն։ Տարակոյս չկայ որ Վանայ լիճն ամբողջապէս Ուրարտուի կը վերաբերէր։„ — Լճին արեւելակողմը գտնուող անկախ տէրութիւնները իրենց գոյութիւնը պահեցին։

Պետութեան այս սահմանները նեղ կու գային այս առոյգ ցեղին, որուն յաջորդները Քսենոփոնի քով այնպէս նշանաւոր հանդիսացած են իրենց գոռ արութեամբը[1]։ Ինչպէս որ Ասուր անդադար աշխարհակալութեամբ ամբողջ աշխարհքը կը ջանար իւր աստուածոյն հպատակեցընել, նոյնպէս եւ Ուրարտեանց՝ Խաղդիսի որդւոց սրտին մէջ վառած էր բաղձանքը՝ միշտ առաւել ընդարձակելու այն սահմաններն, որոնց մէջ իրենց Խաղդիս աստուածը պաշտօն կ՚ընդունէր։ Ի մասնաւորի բնիկ արձանագրութիւնները տէրութեան այս կերպով աճելուն վրայ տեղեկութիւն կու տան։ Ասուրի հետ ընդհարելէ[2] ետքը ծագած Վանայ հիմնարկուն՝ Մենուաս՝ Իսպուինիսի որդին, Սարդուրի Առաջնոյն թոռն

1 Արշաւ. Դ. 3, 4։
2 Deutsche Rundschau, S. 406.

ու Ասորեստանի Ռամանիրարի Գ. Թագաւորին (811—783) ժամանակակիցը՝ Հարաւէն ու արեւմուտքէն մինչեւ Մալաթիա եւ Դիաեննի յառաջացաւ։ Հիւսիսէն ու արեւելքէն Երասխայ դաշտին հարաւային մասը ձեռք անցուց մինչեւ Երեւան ու Ուրմիոյ լճին հարաւային եզերքին հարաւ-արեւմտեան կողմը գտնուող երկիրները։ Արգիստիս Ա. (780—760) եւ Սարդուրի Բ. (760—730) Ասորեստանցւոց ձեռքէն առին Նաիրեան երկիրները՝ Տիգրիսէն մինչեւ Ուրմիոյ լիճն։ Վերջինս իր արշաւանքներով մինչեւ Կիլիկիա հասաւ։ Հիւսիսակողմն Արգիստիս Ա. Երասխայ հիւսիսային դաշտը գրաւեց։ Ամէն միջոց բանեցուցին այս արգաւանդ երկիրները՝ Ետիուսի Նախկին պետութիւնը՝ ձեռքէ չհանելու. բերդեր ու ամրոցներ կառուցուեցան. Արմաւիրի ամրութիւնները դեռ վկայ կեցած են ուրարտեան թագաւորաց կորովոյն[1]։

Ուրարտեանց արշաւանքներուն վրայ տրուած տեղեկութիւններէն կը տեսնուի, որ ասոնք

1 Belck, Verhandlungen 1894, S. 479. Նաիրիի վրայ տես Շօրէք, անդ, էջ 1։ Ասորեստանցի արձանագրութեանց Նաիրիին կը համապատասխանէ տոսպեան սեպագրութեանց Նարաը, որ՝ ինչպէս գլխաւորաբար Կէլիշինի արձանագրութիւնը կը ցուցընէ, տարբեր է Բիաինա-Ուրարտուէ։ Ասորեստանի յետնագոյն ժամանակի թագաւորները Նաիրիի մէկ մասը Ուրարտուի կ՚ընծայեն։ Սակայն Նաիրի անունը՝ երկայն ատեն մնաց Ուրարտուէ անկախ մնացած մասին։ Ասուրնասիրբաղայ եւ Սաղմանասար Բ.ի ատեն Ուրարտուն տակաւին Նաիրիի մաս կը համարուի։ Սակայն տարակոյս չկայ որ վերջնոյն ատենը աշխարհագրական ճշգրիտ զանազանութիւն մը կար Ուրարտուի եւ Նայիրիի միջեւ։

իրենց զօրութեան գագաթնակէտին հասած ժամանակ՝ իրենց երկիրն էին ըրած մերջէն Հայաստան բռնած գրեթէ ամբողջ երկիրը. Նա մանաւանդ թէ տեղ տեղ անոր սահմաններէն ալ անդին անցած էին[1]:

Սակայն խաղդիք չկրցան երկար ատեն իրենց նուաճած ամէն երկիրներուն վրայ իշխել: Հեռաւոր սահմանակից տէրութեանց կախումը առաւել կամ նուազ թոյլ էր: Մենուասայ նուաճած երկիրները ստիպուեցաւ Արգիստիս միւսանգամ սրով գրաւել: Սարդուրիի ատեն Վանայ պետութեան ամէնէն ծաղկեալ վիճակն երկարատեւ չեղաւ, որչափ ալ ստոյգ է թէ Ուրարտու գիտցաւ երկու դար անդադար իր մեծութիւնն իբր հզօր տէրութիւն պահել:

Որչափ աւելի տարածուիլ ջանաց բռնութեամբ, որչափ աւելի յանդգնութեամբ Ասուրի ազդեցութեան տակ գտնուող երկիրներուն մէջ մտաւ յարձակեցաւ, այնչափ աւելի հարկ էր որ

---

1 Մովսէսի Խորենացւոյ անուամբը ծանօթ աշխարհագրութիւնը Մեծ Հայոց մէջ կը դնէ հետեւեալ նահանգները. Բարձր Հայք, Չորրորդ Հայք, Աղձնիք, Տուրուբերան, Մոկք, Կորճայք, Պարսկահայք, Վասպուրական, Սիւնիք, Արցախ, Փայտակարան, Ուտի, Գուգարք, Տայք եւ Այրարատ. տես Soukry Géogr. de M. d. Chor. p. 29 եւ 39: Ագաթանգեղոս (էջ 628) կ'ըսէ թէ Ս. Գրիգոր Լուսաւորչի գործունէութեան դաշտն ու Տրդատայ իշխանութեան սահմանները կը տարածէին Սատաղացւոց քաղաքէն մինչեւ Խաղդեաց աշխարհը, մինչեւ Սաղարջք, մինչեւ Մազքթաց եւ Կասփից սահմանները, մինչեւ ի Փայտակարան, Ամիդէն մինչեւ Մծբին ու Ասորիքի սահմանները, մինչեւ Կորդուաց ու Մարաց երկիրը, մինչեւ Մահքրտան եւ Ատրպատական:

ազդեցիկ ըլլար հակահարուածը, ըստ որում Նինուէի թագաւորները հիւսիս-արեւմտեան դրացւոյն զգալ տուին իրենց երկաթեայ ձեռքը։

Կ'երեւայ թէ երկայն ատեն ասոնց հարուածները կը սահէին կ'անցնէին այս լեռնական ժողովրդեան ամուր վահանին վրայէն։ Սաղմանասար Բ. Արամէի ատեն Վանայ պետութեան դէմ պատերազմի սկսաւ եւ Ագդուրի (Մասիս՞) լերանց քով յաղթեց անոր։ Սամսիրհամման Դ. (824—812) Իսպուինիի դէմ կռուեցաւ եւ այս արշաւանքի ատեն 11 ամրոց եւ 200 քաղաք առաւ։ Սաղմանասար Գ. (783—773) վեց անգամ արշաւեց Ուրարտուի վրայ։ Բայց Ուրարտացիք իրենց զօրութիւնը պահեցին։ Հազիւ Տիգղատպիղեսար Գ.ի (743—727) արշաւանքներովը սկսաւ Վանեան պետութիւնը տկարանալ, որուն այնպէս կ'աշխատէին։ Այս թագաւորին 735ին Ուրարտու ըրած յաղթական արշաւանքը՝ Ասորեստանցւոց թագաւորներուն պատերազմական ամենէն մեծ գործառնութեանց կարգէն է։ Թշնամի պետութեան մինչեւ սիրտը յառաջանալով՝ Տուրուսպայի դրանց առջեւ խորտակեց Ուրարտեանց պատերազմիկ զօրութիւնը։ Ասոր հետեւութիւնն այն եղաւ որ Էնզիի եւ Ուրարտուի բազմաթիւ քաղաքներ Ասորեստանցւոց թագաւորութեանը հետ միացուեցան։ Նախ եւ յառաջ՝ վերջէն Հայաստան ըսուած երկրին հարաւակողմը գտնուող Նաիրեան երկիրներն, որ քիչ մը յառաջ գրաւուած էին, դարձեալ Ասորեստանի անցան։ Ուրար-

տու այս հարուածէն ետքն ալ զօրացաւ։ Սակայն Սարգոն (722—705) կրցաւ բաւական ժամանակի համար Ուրարտուն սաստիկ հարուածներով ընկճել ու ջախջախել։ Բէլք իր հետազօտութիւններովը սա եզրակացութեան յանգած է թէ Ասորեստանցիք երբեք յաջողած չեն Ուրարտուն ամբողջապէս հպատակեցնել։ Սակայն Ուրարտուն վերջին պատերազմներով ա՛յնպէս տկարացաւ, որ ա՛լ երկրորդ կարգի տէրութիւն եղաւ եւ չէր կրնար այլ եւս Ասորեստանի վտանգ սպառնալ։

Սենաքերիբի (705—681) ատեն այս երկու տէրութիւնները տակաւին իրարու թշնամի էին. եւ Ասարհադդոն (681—668) Բիաինայի կամ Արարատայ հողոյն վրան էր մեծ բանակով մը, երբ հօրը սպանումը զինքն ի գահ կոչեց։ Այսուհետեւ Ասուր իր արշաւանքներուն պտուղը քաղեց։ Նիզակակից եղաւ այն երկիւղալից մրցակիցն ու ոսոխն, որ ա՛յնչափ երկար ատեն Ասուրի արեւմտակողմը գտնուող ապըստամբ երկիրներուն ձեռք էր երկարած եւ ի վերջոյ անոր սահմաններն իսկ մտած՝ նուաճելու համար։

Ասուրբանիպաղի (668—647°) ատեն՝ Ուրարտուի Ռուսա եւ Սարդուր թագաւորները Նինուէի իշխաններուն հետ բարեկամութիւն կը հաստատեն։ Տկարանալով՝ նախկին թշնամեաց բարեկամութիւնը փնտռեցին. եւ ասոնց զիրար հասկնալուն նպաստեց դէպք մը, որ Փոքր Ասիոյ հիւսիս-արեւելեան կողման աշխարհացոյցին բո-

լոռուին փոփոխեալ կերպարանք մը պիտի տար, այս է Կիմմերացւոց, երանեան խմբերու արշաւանքը, որ Հիւսիսային Ռուսաստանէն գալով այս կողմերը մտան (678)։

Մինչեւ հիմայ ըսուածներէն տեսանք Արարատայ աշխարհագրական յարաբերութիւնն առ Հայաստան․ այժմ պիտի տեսնենք ազգագրական ու քաղաքական անանկ իրողութիւններ, որ Արարատը Հայաստանի հետ նոյնացընելը անկարելի կ՚ընեն կամ չեն թոյլատրեր՝ Հայոց թագաւորութիւնն Արարատայ թագաւորութեան շարունակութիւն համարել։

Խաղդիք ըսուած ժողովուրդը հնդիկգերմանական Հայերէն տարբեր ցեղ մըն է։ Խաղդեայց պետութիւնն, որ երբեմն այնպէս հզօր էր, ազգաց այն շարժման հոսանքին մէջ ընկղմեցաւ. այս հոսանքին վէտ վէտ ալիքները զՀայերը բերին իրենց այսուհետեւ Հայաստան ըսուած հայրենիքը կամ Արարատայ վրայ հանեցին։ Իսկ հեղեղը Խաղդեայց մնացորդները առաւ տարաւ այլ եւ այլ ապաստանարաններ, ուր վերջէն կը գտնենք զիրենք օտար իշխանութեան տակ ու Հայերէն որոշակի բաժնուած։

Ո՞ւսկից եկան Հայերը։ Կարելի է թէ վաղնջական ժամանակներէ հետէ երկրին մէջ կը բնակէին եւ այս ժամանակներս թերեւս Կիմմերացւոց հեղեղի նման թափուելուն հետեւանօքն Ուրարտացիները մղեցին եւ ինքնակաց մեծ նշանակութիւն ստացան։

Հիներն իսկ կը խօսին արեւմուտքէ եկած

գաղթականութեան մը վրայ։ Հերոդոտոս է, 73 Հայերը Փռիւգեցւոց մէկ ճիւղը կը համարի, իսկ Ստրաբոն. Թեսաղական ազգերու սերունդ։ Այս տեղեկութեանց հին շաւղէն չի հեռանար այսօրուան հետազօտութիւնն ալ։

Կրէչմէրի[1] ըսածին նայելով՝ Հայերը, որ փռիւգերէնի ազգակից լեզու մը խօսէին, ժամանակաւ Թեսաղիոյ հիւսիսակողմը կը բնակէին եւ, երբ երրորդ հազարամեակին Թրակեան-փռիւգական ազգերը շարժելու սկսան, անոնց հետ դէպ ի Փոքր Ասիա գաղթեցին, Բիւթանիայէն եւ հիւսիսային երկիրներէն անցնելով Փոքր Հայք մտան եւ վերջէն բուն Հայաստան հաստատուեցան։

Պ. Եէնսէն[2] Կրէչմէրի կարծիքն ընդունելու պատճառ մը չի տեսներ՝ հիմ բռնելով փռիւգերէնի վրայ մեր ունեցած այսօրուան ծանօթութիւնը, ըստ որում “Հայոց փռիւգական նախահայրենեաց վրայ տրուած այն տեղեկութիւնը աւելի արժէք մը չունի քան ինչ որ խորունկ մտածող գիտուն մը կրցած է յերիւրել„, եւ փռիւգական նախահայրենեաց հնարաւորութիւնն ընդունելով հանդերձ՝ տակաւին կարելի կը համարի հնդիկգերմանական Հայոց հիւսիսային արեւելքէ՝ Ասորիքի հիւսիսակողմը գաղթելը։ Հայոց հիւսիսային Ասորիք եւ Կիլիկիա

---

1 Einl. in die Geschichte der griech. Sprache. 1896, S. 208 ff. Հիւպշմանի քով Arm. Gramm. I., S. 399. Հմմտ. Meyer, Gesch. des Altertums, II., S. 893, S. 58.

2 Hittiter und Armenier, S. 197.

գաղթելը կը դնէ Քրիստոսէ յառաջ երկրորդ հազարամեակին վերջին քառորդը՝ շեշտելով որ տարակոյս չկայ թէ Հայերը Քրիստոսէ յառաջ իբր 1000 թուականին Փոքր Ասիոյ եւ Ասորիքի մէջ իբր քաղաքակիրթ ժողովուրդ հաստատուած էին։ Եէնսէն ալ նմանապէս պատրաստ է՝ Հայոց իրենց այժմեան բնակավայրը գաղթելը Կիմմէրացւոց Փոքր Ասիա ողողելուն հետ յարաբերութիւն ունենալն ընդունելու։

Աւելի որոշ է Բէլքի հետազօտութեանց արդիւնքը։ “Այս նկատմամբ կատարած քննութիւններս թէեւ տակաւին աւարտած չեն, սակայն սաչափ, կը գրէ, կրնամ որոշ կերպով ըսել թէ անոնց արդիւնքը շատ կը մօտենայ Մայէրի քով (անդ, էջ 41) յայտնուած տեսութեան, թէ ներքին առնչութիւն մը կայ Հայոց եւ Կիմմէրացւոց յառաջխաղացութեան միջեւ[1]։„ “Կը կարծեմ թէ մանրակրկիտ հետազօտութիւններով հաստատած եմ որ Հայերն իրենց ասպատակէն յառաջ Կապպադովկիա կը բնակէին. ասով ըստ բաւականի ալ կը մեկնուի յառաջխաղացութենէն յառաջ իշխող Հայ թագաւորաց գերեզմաններուն Երզինկեանի հարաւակողմը՝ Անի-Կամախ գտնուիլը։ Հայք յառաջ քալած են Մալաթիա — Տիգրանակերտ ուղղութեամբ[2]։„ Մուրատ կը կարծէ թէ

---

1 Verhandlungen der Berl. Ges. für Anthropol. 1895, S. 607.

2 Անդ 1896, էջ 318 եւն։

ճշդագոյն համարելու է Մայէրի նախկին կարծիքը, որուն համաձայն կարելի չէ տակաւին Հայոց հնագոյն պատմութեան նկատմամբ ապահով բան մ'ըսել[1]։ Ուստի կրնանք մտածել թէ Կիմմէրացւոց յառաջխաղացութիւնը հնդիկգերմանացի Հայերը ստիպած է այսօրուան Հայաստանի արեւմտակողմը կամ Արարատայ սահմաններուն մէջ եւ կամ հիւսիսային Ասորիք գտնուող բնակավայրը թողուլ — եթէ Հայերը այս ազգերուն հետ միասին Փոքր Ասիա չարշաւեցին — եւ Ուրարտեանց երկիրներուն հիւսիսակողմը նոր հայրենիք մը փնտռել։ Այս արշաւանքն, որ Արարատայ տկարութիւնը աճեցուց, կրնայ պատճառ եղած ըլլալ Արարատցւոց Ասորեստանի հետ բարեկամանալուն։ Բայց Ասորեստանի բարեկամութեամբն ալ չկրցաւ արշաւողներուն առջեւն առնուլ։ Յայտնի է թէ ազգաբնակութեան փոփոխութիւնը կամաց կամաց տեղի ունեցաւ։ Խաղդեան ժողովրդեան լեռնաբնակ մասն՝ երկայն ատեն Նորեկ հայերուն դէմ դրաւ։ Քսենոփոն կը հաստատէ մեր այս ըսածը։ Ընդհակառակը դաշտաբնակներն ետ մղուեցան ու քաշուեցան դէպ ի հիւսիս։ Տուշբա, հին թագաւորանիստ քաղաքը լքուելով՝ թագաւորանիստը Երասխայ դաշտին ամրոցները փոխադրուեցաւ։ Այս դէպքը կը յիշեցընէ Մովսէս Խորենացի, երբ կ'ըսէ թէ ժամանակաւ արքայանիստ քաղաքն էր Արմաւիր[2]։ Ուրար-

---

[1] Անդ, էջ 11։

[2] Բելք, անդ 1896, էջ 318։

տեանց Թագաւորները վերջին անգամ իրենց զօրութիւնը Երասխայ դաշտը կենդրոնացուցին։ Ասով կը մեկնուի Երասխայ դաշտին հին Թագաւորութեան անունը պահելը եւ նոյն անուան հոն գաւառի անուն ըլլալը։ Հոն տեսաւ Արարատ իր վերջին օրերը։ Նուաճողներն Արարատ ճանչցած էին վերջնականապէս այս երկիրը։ Կ'երեւայ թէ հոս Նեստուեցան քուէները, որ հին պետութեան վերջնական դիրքն որոշեցին։ Կ'երեւայ թէ Արարատեան պետութեան այս բախտին արժանանալէն ետքը կամ Հայոց յառաջխաղաց արշաւանաց հետեւութեամբը՝ խաղդեան ժողովրդեան մէկ մասերը դէպ ի հիւսիս քաշուած են, ուր զասոնք կը նշանակէ Հերոդոտոս "Ալարոդեան" կոչելով։

Հայոց այս յառաջխաղացութեամբը՝ միայն Ուրարտացիք իրենց տեղերէն քշուեցան։ Ուրիշ շատ ժողովուրդներ ալ, որ՝ սեպագիր արձանագրութեանց ըսածին համաձայն՝ յառաջ հարաւարեւմտեան Հայաստան կը բնակէին, վերջէն Ուրարտեանց մնացորդներուն հետ Պոնտոս կը գտնենք. ուր այսօր ալ Խաղդիա թեմը հնդիկգերմանական գաղթականութեան ատեն՝ այս ժողովրդեան այս կողմերն ապաստանիլը կը յիշեցընէ, այսպէս Մոսքացիները, Տիբարացիներն ու Տայեցիները, եթէ հիմ ունի Դաիաենի եւ Տայք համեմատութիւնը։ Ասոնք ալ Քրիստոսէ յառաջ վեցերորդ դարուն հանդիպած ազգաց գաղթականութեան վկայ են։

Արարատայ զօրութիւնը վերջնականապէս

ո՞վ խորտակեց։ Հաւանականագոյնս Մարերն, որ ինչպէս Կիաքսարի ատեն Մանեանները նուաճեցին, նոյնպէս եւ Հայոց վրայ յարձակեցան։

Ասորեստանի անկումէն ետքը՝ պէտք է որ Ուրարտու Երեմիայի քով գտնուող տեղւոյն համաձայն անգամ մ'ալ նշանաւոր զօրութեան հասած ըլլայ. որմէ կը հետեւի թէ գաղթող Հայերը տեղացի բնիկ ժողովրդեան դիմադրութիւնն ամբողջապէս ընկճել ու խորտակել կրցած չեն։ Երեմիայի մարգարէութիւնը հաւանօրէն իբր 593ին կամ 592ին գրուած է, ինչու որ վերջին թագաւոր կը կոչուի Նաբուքոդոնոսոր, որ Ասորեստանի աւիւծը կողոպտելէ վերջը՝ կերած է Իսրայէլի ոսկրները, եւ նմանապէս Մարաց թագաւորները տակաւին միացած չեն տեսնուիր։ Նոյն ժամանակը մատնանիշ կ'ընէ նաեւ գլ. ԾԱ, 59։

Ուստի՝ Մարք եղած պիտի ըլլան Արարատը խորտակողն եւ միանգամայն Նորագաղթ Հայերն նուաճողը։ Ըստ այսմ Հայերն ո՛չ քաղաքականօրէն եւ ո՛չ ազգագրօրէն Արարատը ժառանգեցին։ Արարատայ թագաւորութեան ու Հայոց թագաւորութեան մէջտեղը բաւական երկայն ժամանակամիջոց մը կայ, զոր կը լնու օտար տիրապետութիւն մը։ Արարատայ կործանումէն ետքը՝ Մարաց իշխանութեան տակ մտան Հայերէն դէպ ի հիւսիս մնեալ բնակիչներն, Հայերն ու այն ամէն ժողովուրդները, որ ժամանակաւ Խաղդեայց հպատակներն էին։ Մարականին յաջորդեց Պարսից տիրապետութիւնը,

որ իշխեց դարձեալ այլազան ազգերու խառնուրդին[1] վրայ՝ եկած խմբուած նախկին Արարատայ գետնոյն վրայ։ Խմբուած էին այնտեղ ասորի ցեղեր, իբերացի ու քրդական ազգեր, հին Խաղդեայց մնացորդները, փասիանցիք, Հեսպերացիք, Սկիւթացիք, Խալիբացիք, Տայք ու Հայք։ Հիւբշման[2] Ինճիճեանի ժողոված տեղեաց անուններուն վրայ հիմնուելով կը կարծէ թէ հայկական խիտ բնակչութիւն մը միայն Բարձր Հայոց, Այրարատայ, Տուրուբերանի եւ Վասպուրականի մէջ կար։ "Նորերս Տոմաշէք ցուցուց թէ Սասնոյ գաւառներուն (յԱղձնիս) եւ Խոյթի (ի Տուրուբերան) մէջ դեռ 10դ դարուն ոչ-հայկական ժողովուրդ մը կար ոչ-հայկական լեզուաւ։" "Որդէացիք ալ ոչ-հայկական էին, որ՝ ասորի աղբիւրներուն ըսածին նայելով՝ 5դ կամ 6դ դարուն ի Հանձիթ կը բնակէին։"

Ազգագրական յարաբերութեանց կը համապատասխանէ Արմէնիա անուան սկզբնական գործածութիւնը[3]։ Արմէնիա անունն առաջին անգամ կը տեսնենք հին պարսկական սեպագրութեանց մէջ Արմինա կամ Արմինիեա ձեւով եւ կը ցուցնէ Ուրարտուի արեւմտակողմը գտնուող երկիրը՝ Դասականաց Փոքր Հայքը[4]։

Քսենոփոն[5] գիտէ քրդական լերանց հիւ-

1 Հմմտ. Կիպերթ, անդ, էջ 79։
2 Arm. Gramm. S. 405.
3 Հմմտ. Շպիգել, անդ։
4 Շպիգել, անդ։
5 Հմմտ. Արշաւ. Դ, 3. 4. 7. 18. Է, 8. 25։

ձախակողմը Արեւելեան Հայաստան գաւառը, Տիգրիսի եւ Տելեբոասի միջեւ Արեւմտեան Հայաստանը. այնպէս որ իր Հայաստան անուանած աշխարհը սահման ունի իրեն արեւելքէն կենտրիտէսը, հիւսիսէն փասիանցւոց երկիրը։

Աւելի ուշ ժամանակ անունս ընդարձակուեցաւ եւ աշխարհագրութեան հասարակաց ստացուածքն եղաւ։ Քաղաքական կարեւորութիւնը որուն վերջէն հայ ազգը հասաւ, կարելի է թէ Հայաստան անունը դրոշմած ըլլայ ուրիշ ազգաց երկիրներուն վրայ ալ։

Երբ 189ին Ասորւոց Անտիոքոս Մեծ թագաւորը Հռովմայեցիներէն յաղթուեցաւ, իր Արտաքսիաս եւ Զարիադրէս զօրավարները յաջողեցան անկախ թագաւորութիւններ հիմնել, առաջինը Մեծ Հայոց, իսկ երկրորդը Ծոփաց մէջ։ Տիգրան, Արտաքսիասի մէկ յաջորդը, կրցաւ Ծոփաց վերջին թագաւորը եւ Զարիադրէսի յաջորդը գահընկէց ընել եւ երբ 90ին Ն. Ք. Ք. ամբողջ երկիրը իւր գաւազանին տակ միացընել։ Քրիստոսէ ետքը 66ին՝ Տրդատ Ա., Պարթեւաց Վաղարշակ թագաւորին եղբայրը, յաջողեցաւ Հայոց գահը ելլել։ Իրմով սկսաւ Արշակունեաց հարստութիւնը Հայաստանի վրայ։

Արարատայ հողոյն վրայ նորէն ծաղկեցաւ հզօր պետութիւն մը։ Սակայն հարկ եղաւ որ դարեր սահէին անցնէին, մինչեւ որ ազատութեան փառաւոր լոյսը նորէն ճառագայթէր Մասիսին շուրջը գտնուող երկիրներուն վրայ, ուր երբեմն Խաղդիք Ասորեստանցւոց դէմ խրոխտացած էին։

Ազգային միութեան եւ ոչ մէկ կապ Նոր պետութիւնը հնոյն հետ կը կապէ։ Ուրիշ ժողովուրդ մըն է որ կ'իշխէ, ուրիշ լեզու մըն է որ երկրին մէջ կը հնչէ ու երգեր կ'երգէ՝ ուրիշ աստուածներու։

Այս երկու երկիրներուն՝ յընթացս պատմութեան բազմապատիկ փոփոխեալ սահմաններուն հաւասարութիւնը անկատար հաւասարութիւն է։ Ընդհանրապէս Հայաստան Արարատայ սահմաններէն անդին կ'անցնի, ի մասնաւորի դէպ արեւելք, ուր Հայաստան մինչեւ անգամ Ատրպատականը գրաւած է՝ առժամանակեայ կերպով[1]։

Երբեք Արարատ չի կրնար Հայաստան նշանակել՝ անոր ամէնէն տարածեալ ժամանակը աչքի առջեւ ունենալով։ Առ առաւելն սա իմաստով Հայաստանն ու Արարատն իրարու հաւասար կրնանք դնել, ինչ իմաստով որ կարելի է թերեւս ըսել թէ “Արեւելեան Հռովմայեցւոց պետութիւնը„ Օսմանեանց պետութիւնը կը նշանակէ։

Ինչպէս Արարատ անունը, նոյնպէս եւ Հայաստան անունն ունին իրենց պատմութիւնը, այնպէս որ առանց ժամանակը ճշդիւ որոշելու՝ կարելի չէ Արարատը Հայաստանի համազօր դնել։ Փոխանակ Արարատն երկրի անուն կոչելու, որով որոշ երկրի մը միայն աշխարհագրական անունը կը հասկցուի, լաւագոյն է

1 Քաղոանէ, անդ 183։

նոյն անունը ըմբռնել աւելի իբր քաղաքական գաղափար մը քան երկրի անուն. այս ըմբռնմամբ թէ՛ պատմական յարաբերութեանց եւ թէ՛ Երեմիայի քով եւ ուրիշ տեղեր անուանս գործածութեան տարբեր առումներուն կը համապատասխանուի։

## 4.

Որչափ ալ ներելի չէ Արարատը Հայաստանի համանիշ դնել, սակայն ասով ըսուած չէ, թէ սխալած են աստուածաշունչ Գրոց թարգմանութիւններն՝ Արարատը Հայաստան թարգմանելով։

Ս. Գրոց թարգմանութիւնները կրնային Արարատը վայելչօրէն Հայաստան թարգմանել, ուր նոյն անունը տեղ որոշելու համար գործածուած է, ինչու որ այս թարգմանութեամբ հասցուած է աշխարհագրական վախճանին՝ թէեւ նուազ ճշդութեամբ. Նա մանաւանդ թէ Արարատ անուան իմաստին մինչեւ քրիստոնէութեան ժամանակը կրած փոփոխութիւններն աչքի առջեւ ունենալով՝ այլ եւս աշխարհագրօրէն պատշաճ չէր թարգմանութեան մէջ Արարատ անունը միշտ պահել։

Թարգմանչի մ'իրաւանց այս սահմանին մէջ շարժած է նաեւ Վուլգատա՝ Ծննդոց Ը, 4 եւ Եսայեայ ԼԶ, 37 Արարատը Հայաստան թարգմանելով. իսկ Երեմ. ԾԱ, 27, ուր քաղաքական յարաբերութիւնները կը պարզուին, պահած է Արարատ անունն ու մեկնիչներուն

թողած է պարզելով լռացընել, ինչ որ թարգմանիչը չէ կրցած բացատրել։

Երեմիայի յունական թարգմանութիւնն ալ անանկ ընթերցուածներ ունի, որ այս յարաբերութեան կը համապատասխանեն, մինչ յայտնապէս այս տեղս Արարատ եւ Միննի անուններն առ հասարակ կը պակսին։

Ասորական թարգմանութիւնն Երեմիայի քով Արարատ անունը պահած է։

Հայկականը Ծննդոց Ը, 4 պահած է Արարատ անունը եւ ասով կանխած է բնագրովս ընծայուած աշխարհագրական խնդրոյն լուծումը, եթէ ասով Արարատ գաւառը հասկցած է։

Այս թարգմանութեան մէջ Եսայեայ ԼԷ, 38 տեղը "ի Հայս„ կը կարդանք, որ թէեւ աշխարհագրօրէն ուղիղ է, սակայն այս բացատրութեան մէջ ազգագրօրէն աններելի գաղափար մ'ալ ամփոփուած կայ. Ճշգագոյնս ըսելու էր "Ցերկիրն այսօրուան Հայոց։„ Ընդհակառակն աշխարհագրօրէն յաջող է թարգմանութիւնն Տովբ. Ա, 24 "ի լերինս Հայոց„, ուր ազգագրօրէն անճիշտ գաղափարն այնպէս չի զգացուիր։ Բոլորովին յաջողապէս պահուած է Երեմիայի քով եւ Թագաւորութեանց մէջ Արարատ անունը, բաւական որ առնուած չըլլայ իբր գաւառի անուն։

Մինչ կրնայ թարգմանչաց ներեալ ըլլալ Արարատը Հայք թարգմանել, սակայն մեկնիչք իրենց պաշտօնը կատարած չեն ըլլար Արարատն

ու Հայաստանը հոմանիշ համարելով։ Մեկնչաց գործն է հնախօսօրէն ու պատշաճօրէն անուանս իմաստը պարզել եւ Արարատը ներկայացընել այն, ինչ որ էր իրապէս։ Պարզապէս "Արարատը Հայաստան կամ անոր մէկ գաւառը կը նշանակէ" մեկնութիւնը պէտք էր որ քաղաքականօրէն ու ազգագրօրէն մոլար եւ աշխարհագրօրէն անճիշտ գաղափարներ ծնուցանէր։

Ուստի նախ հաստատուն բռնելու է որ Ս. Գրոց մէջ Արարատ անունը կրկին նշանակութիւն չունի։ Երբեք կերպապէս գաւառի անուն չէ։ Արշակունեաց պետութեան՝ վերջէն նոյն անունն առած գաւառին անունը չէ, այլ մի եւ նոյն պետութեան անունն է՝ անոր զարգացման այլ եւ այլ ժամանակները, բայց ի մասնաւորի սկզբնաւորութեան ու անհետացման ժամանակները։ Ըստ այսմ անունս նախ քաղաքական գաղափար մը կը ներկայացնէ, երկրորդաբար միայն Խաղդեայց պետութիւնը կը նշանակէ։ Ասով՝ անուղղակի աշխարհագրական նշանակութիւն մ'ալ կը ստանայ, որուն արժէքը սակայն պէսպէս եղած է՝ երկրին գլխէն անցածներուն համեմատ, եւ հարկ է՝ ամէն անգամ յիշեալ դէպքին ժամանակն աչքի առջեւ ունենալով որոշել իմաստը։

Եսայեայ ԼԷ, 37, Գ. Թագաւորութեան ԺԹ, 37 եւ (յուն.) Տովբիթի Ա, 21 քով Արարատ անունը կը ցուցընէ թագաւորութիւնը կամ պետութիւնը, որ՝ Տիգղատպիղեսերայ եւ Սարգոնի յաղթութեանց հետեւանօք՝ (հարա-

ւային-հայկական) Նաիրեան երկիրներն եւ ուրիշ աշխարհներ կորսնցընելով Ասորեստանի տուած էր։ Այստեղ Արարատ անունով նշանակուածն է մերձաւորապէս (Մեծ եւ) կենդրոնական Հայաստան՝ միջին Երասխայ դաշտովը։

Երեմիայի քով Արարատ անունով այն երկիրը կոչուած է, զոր Արարատայ իշխանները կրցած էին պահպանել արշաւող Նորամուտ Հայոց դէմ. այս երկիրն է որ՝ Ասորեստանի կործանումէն ետքը՝ մասնաւորապէս Մանեանց կռթնելով միւսանգամ նոր զօրութեան էր հասած։ Սահմանները նման պիտի ըլլան՝ Եսայեայ քով Արարատը շրջապատողներուն, եթէ հարաւէն Հայոց ճնշումը ստիպած չէ արդէն դէպ ի հիւսիս տարածուելու։ Բայց ի՞նչ կը նշանակէ Արարատ անունը Ծննդոց գրքին մէջ։ Այս հարցման պատասխանը կախում ունի Արարատայ հնութիւնը ճանչնալէն եւ այն պարագաներէն, որ Խաղդեանց պետութեան Արարատ կամ Ուրարտու անունը տուին։ Այս ըսուածն հետեւեալ խորհրդածութեամբ կրնանք հաստատել. Քանի որ Արարատ անունը Վանայ նախահայկական պետութեան բնիկ կամ ազգային անուանակոչութիւնը չէ, ուստի պէտք մը չկայ նոյն անունը՝ այս ժողովրդեան սկզբնական բնակավայրին անունը համարելու։ Նա մանաւանդ թէ կարելի է որ այս անունը հնագոյն ատեններէ ի վեր կը տրուէր Վանայ ծովուն հարաւակողմն եւ արեւելակողմն գտնուող երկրին, ուր Խաղդիք իրենց պատմական պետութիւնը հիմնե-

ցին: Ասոր նման են Գուդի անունն, որուն մէջ դեռ կ'ապրի[1] Գուտու 5000ամեայ հին անունն, եւ Մուքացւոց, Կումմուխի, Մուխիի, Միլիտի անուններն, որ կը յիշուին Տիգղատպիղեսեր Առաջնոյ տարեգրութեանց մէջ:

Բայց որովհետեւ հնագոյն աղբիւրներն այս երկիրը պարզապէս Նաիրիի գաղափարին մէջ կ'ենթադրեն, ուստի եւ կրնայ ընդունուիլ թէ այս անունն այս երկրին չէր տրուեր, այլ կը տրուէր Ուրարտացւոց սկզբնական բնակավայրին՝ Վանայ լճին արեւելակողմը, եւ հոն ալ անունս լոկ ոչ-ազգային անունն էր ժողովրդեան եւ պետութեան, բաւական որ Նաիրեան երկիրներէն ամէն մէկուն ծանօթութիւնն ի սկզբան անդ Ասորեստանցւոց քով անորոշ չըլլար: Կամ արդեօք Արարատ անո՞ւնն էր այն պետութեան, որուն վրայ կ'իշխէր Սարդուրիէն յառաջ տիրող հարստութիւնը՝ ըլլալով տէրութիւն մը տէշուբեան ժողովրդեան մէկ ուրիշ խմբին:

Այս երեք հնարաւոր կարծեաց երկրորդովը — որոնց մէջէն երրորդն՝ առաջնոյն հետ կրնայ հաշտուիլ — կը մեկնուի սա պարագան որ Տիգղատպիղեսեր Առաջնոյն տարեգրութեանց տակաւին անծանօթ է Ուրարտու-Արարատն: Ինչու որ այս թագաւորին դէպ արեւմուտք ըրած արշաւանքները իրենց նպատակ ունէին նուաճելու գլխաւորաբար այն երկիրները, որ կը տարածուէին Խսսոսի ծոցին ու Վա-

1 Winkler, Völker Vorderasiens S. 27.

նայ ծովուն մէջ, ուստի անանկ երկիրներ, որ Տոսպեան լճին հարաւ-արեւմտակողմն էին։

Տարակոյս չկայ որ ստոյգ չէ թէ անունս իր նախնական սկզբնաւորութեանը մէջ այսօրուան Արարատ նահանգը կը նշանակէր՝ միջին Երասխայ վրայ։ Հակառակ կ'ըլլէ ասոր Ուրարտացւոց մեծ թագաւորներուն նախ այս երկիրները նուաճելու ստիպուած ըլլալը։ Այս պարագայի մէջ հարկ է որ վիճելի դառնայ ապահովութիւնն, նա՝ հաւանականութիւնն այն կարծեաց, որ Մասիսը — զոր արեւմուտքի ոչ-Հայերն պարզաբար Արարատ կը յորջորջեն — տապանակիր լեռը կը համարի։

Այս կարծիքն առ հասարակ աւանդութիւն կը համարուի՝ տապանին հանգչելուն տեղւոյն նկատմամբ։ Ստոյգ ալ այս է դարերէ-ի վեր տիրող կարծիքը։ Բայց եթէ տեղեկութիւն մ'այն ատեն կրնայ "աւանդութիւն" կոչուիլ, երբ անոր բովանդակութիւնը չէ թէ արդիւնք է ուսումնական հետազօտութեան՝ գրաւոր տեղեկատուութեան վրայ հաստատուած, այլ երբ դէպքին ժամանակէն կամ դեռ դէպքին շօշափելի հետքերուն ականատես եղած վկաներէն բղխած, Ս. Գրոց հետ ընթացած եւ Ս. Գիրքը լրացնող տեղեկութիւն մըն է. քանի որ աս սանկ է, քրիստոնէական աւանդութեան յարգը չի կրնար ընծայուիլ այն կարծիքին որ կ'ըսէ թէ Մասիսն է տապանակիր լեռը։

Վերը յառաջ բերուեցան այն պատճառներն, որոնցմով կը ցուցուէր թէ Հայոց քով

ջրհեղեղի ազգային զրոյց մը կայ եւ սա ալ ըսուեցաւ թէ այս զրուցին մէջ Մասիսն է որ մեր դիմացը կ՚ելլէ իբր տապանակիր լեռ։

Այնտեղ քանի մը խնդիրներ ըրինք ցուցնելու համար որ այն աւանդութիւնը չի կրնար մեր խնդիրը լուծել։ Այստեղ դարձեալ նոյն խնդիրներուն կը դառնանք։ Ջրհեղեղի զրուցին վկան է Մովսէս Խորենացի՝ իր Հայոց Պատմութեանը մէջ։ Նկատելով որ իր գործն ուշ ժամանակ գրուած է, միշտ խնդրական կը մնայ թէ իր հաղորդածն որչափ պահած է աւանդութեան հին գոյացութիւնը՝ ազատ յետնագոյն խառնուրդներէ։ Եթէ ասի ընդունելու ալ ըլլանք, դեռ կրնայ խնդիր ըլլուիլ թէ արդեօք Հայերն իրենց երկիրը գաղթած ատեն այս աւանդութիւնն իրենց հետ չբերի՞ն — Փռիւգիա ալ պահած է այս աւանդութիւնը[1] —, եւ այս պատճառաւ Ս. Գրոց՝ ջրհեղեղի վրայ տուած տեղեկութիւնը մեկնելու չի կրնար գործածուիլ աս աւանդութիւնը։ Ալիշանին[2] ժողովրդական երգէ մը հաղորդած տողերն՝ իրեն անգամ այնչափ հին չեն տեսնուիր, որ կարենան տապանին Մասիսի վրայ նստելուն վկայել։ Յովսեպոսի՝ Նիկողայոս Դամասկացիէն պահած կտորը կ՚ըսէ թէ ջրհեղեղի ատեն ապաւինի տեղն եղաւ Բարիս։ Մասի՞սն է։ Կիպերտ[3] կը կարծէ թէ Մասիսն ըլլայ. Մուրատ[4] կ՚ապա-

1 Schanz, Theol. Q. 1895, S. 33.

2 Ալիշան, անդ, էջ 57։

3 Կիպերտ, անդ, էջ 75։

4 Անդ, էջ 47 եւն։

ցուցանէ։ Եթէ ասով ջրուած ալ ըլլային հակառակ կարծիքները, որ Բագրեւանդայ Վարագը Բարիս կը համարին կամ Բարիսը Քրդաստանի մէկ լերան՝ Ռէվանդիզի, աւանդութեան մը Լուբարին հետ կը նոյնացընեն, սակայն միշտ մտածել կու տայ սա պարագան որ Հայերն աս աւանդութիւնն իրենց երկիրը բերած են եւ Մասիսի հետ յարաբերութեան մէջ դրած։ Այս ըսուածն փոփոխութիւն չի կրեր Յովսեպոսի աւանդածովը թէ Հայաստանի մէջն է Նոյի իջած տեղը։ Իւր բնագիրն, որ տապանին նստած տեղը կը համարի միանգամայն իջման տեղ, չի կրնար մի եւ նոյն ժամանակ թէ՛ Մասիսը եւ թէ՛ Նախիջեւանը մատնանիշ ընել, այլ հասկըցնել կու տայ թէ հայկական զրոյցը հին ժամանակները տապանի նստած տեղը պէսպէս կը ներկայացընէր՝ Նախիջեւանի հետ Մասիսն ալ նշանակելով։ Եթէ Հայոց Հրէից հետ կանխաւ ծանօթութիւն ունենալու պարագային՝ բնիկ աւանդութիւնն՝ հրէական ազդեցութեամբ Մասիսը միայն առած ըլլար իբր լեռ Արարատայ, այն ատեն հարկ էր որ այս ըմբռնումն երկրին քրիստոնէական կրօնն ընդունած ժամանակը պահուէր ու մատենագրութեան մէջ անցնէր։

Համեմատաբար ուշ ժամանակ մատենագրութեան մէջ յերեւան կ՚ելլէ այս կարծիքը։ Ս. Հերոնիմոս Եսայեայ մեկնութեանը[1] մէջ պաշտպան կը կանգնի այս կարծեաց։ Իր խօս-

---

1 Migne, 24, էջ 389։

քերը կը ցուցընեն որ իր քովը գտածնիս ոչ թէ կրկնութիւնն է քրիստոնէական աւանդութեան մը, այլ եզրակացութիւն մըն է Ս. Գրոց բնագրէն հանուած. “Հայաստանի մէջ անհաւատալի արգաւանդութեամբ դաշտային գաւառ մըն է Արարատ՝ տարածուելով մինչեւ Տաւրոսի ստորոտը. Արարատայ մէջէն կ'անցնի Երասխ։ Ուստի եւ տապանը, որով ազատեցաւ Նոյ եւ իւր որդիքը, ջրհեղեղին դադրելուն ոչ թէ ընդհանրապէս նստաւ ի լերինս Հայաստանի, որ Արարատ կը կոչուի, այլ Տաւրոսի բարձրաբերձ լերանց վրայ, որ Արարատը կը գերազանցեն իրենց դաշտերովը։„ Տարակոյս չկայ որ ըսուածը կը պատշաճի Մասիսի։

Երկրախօսական,[1] աշխարհագրական[2] եւ տեղագրական[3] ապացոյցներ գտնուեցան, որոնք իբր թէ այս ենթադրութեան ճահաւոր ըլլալը կը ցուցնեն. ասոնք խնդիրը չեն կրնար որոշել։ Ամենէն աւելի հարկ է ծանրակշռութիւնը դնել կարծիքիս ներդաշնակութեան վրայ՝ Ս. Գրոց բնագրին հետ։ Պէտք չէ՞ Ծննդոց Ը, 4, 5, 9 համարներէն հետեւցընել՝ տապանին ամենէն բարձր լեռնագագաթին վրայ նստած ըլլալը։ Կարելի՛ է ժխտել։ Եթէ Նոյ տասներորդ ամսոյն լերանց գագաթներն տեսաւ, ասկէ տակաւին չի հետեւիր որ անպատճառ ընդունելու ենք թէ տապանն ամենէն բարձր գագաթին վրայ հանգ-

1 Kirchenlexikon.
2 Herzog, Realencyklopädie 1. Aufl, X S. 398.
3 Perrot, Reise zum Ararat. Berlin 1834.

չեցաւ եւ Նոյ այս տեղէն՝ Նուաղ բարձր լերանց գագաթներուն զնստող ջրէն վեր բարձրանալը հետ զհետէ տեսաւ։ Ս. Գրոց խօսքերուն համապատասխանած կ՚ըլլանք ընդունելով թէ տապանն ոչ-ընդարձակ երկրի մ՚ամենէն բարձր կէտին վրայ նստաւ, եւ Նոյ այս տեղէն նախ մերձաւոր լեռնագագաթներուն ջրոյ՝ մէջէն դուրս ցցուիլը տեսաւ եւ վերջէն նշմարեց հեռաւոր սայրերն, երբ տակաւ փարատեցաւ աղջամուղջը, որ կրնար կազմուած ըլլալ ջրոյն շոգիանալովը։ Աղջամուղջին պատճառաւ հեռուն չտեսնելէն կը մեկնուի նաեւ թէ ինչպէս Նոյ երկրին ցամաքած ըլլալն ուզեց իւր թեւաւոր լրաբերներուն ձեռքովը ստուգել։ Զինքն ասոր ստիպողը լերան չափազանց բարձրութիւնը չէր, ինչու որ Ծննդ. Ը, 13ի ըսածին նայելով Նոյ ի վիճակի է տապանին հանգչած տեղէն տեսնել՝ երկրին չորցած ըլլալը։

Ուստի մեկնաբանական հնարաւորութիւն կայ՝ Մասիսի տեղ ուրիշ լեռ մը իբր տապանակիր ընդունելու, եւ անդրագոյն պարագայ մը կրնայ այս հնարաւորութիւնն իրականացած ցուցնել։ Այսինքն ընդունելի չ՚երեւար որ Աստուծոյ նախախնամութիւնը տապանին հանգչելուն անանկ գագաթ մ՚ընտրած ըլլայ, որ մշտնջենաւոր ձիւնով ծածկուած է եւ դժուարելանելի, որով թէ՛ տապանին մէջ բնակող մարդիկ եւ թէ՛ հոն ապաստան գտած բազմաթիւ կենդանիք, որ լեռ ելլելու այնչափ յարմարութիւն չունէին, պիտի ստիպուէին ջրոյն

անհետանալուն սպասել եւ ապա երկիր իջնալ։ — Ս. Գրոց հնագոյն մեկնութիւնը Մասիսէն տարբեր լեռ մը կ'ընդունի։ Քրիստոնեայ հին Հայերն անգամ Մասիսին տապանակիր լեռ ըլլալը չէին ընդունէր։ Մուրատ կը փորձէ ի նպաստ Մասիսի անով վկայութիւն մը գտնել, որ Ս. Գրոց հայկական թարգմանութիւնը՝ պեշիտտայի եւ ասորի մեկնութեան հակառակ՝ Ծննդ. Ը, 4ի մէջ Արարատ երկրանունը պահած է։ Բայց կրնանք ըսել թէ Ս. Թարգմանիչներն այս անունը չէին առնուր լոկ ջրհեղեղի ազգային վրուցին վրայ հիմնուելով, եթէ իրենց առջեւն ունեցած Ս. Գրոց օրինակին մէջ նոյնը չգտնէին։ Ասոր ի նպաստ կ'ելլէ այն անխնայ ընդդիմութիւնն, որ ի մասնաւորի Սահակայ եւ Մեսրոպայ ատեն ամէն հեթանոսականի դէմ կար. բաւ է յիշել Եզնիկը։ Կրնայ ըլլալ որ աւելի Արարատ անուան կարեւորագոյն նշանակութիւնն աչքի առջեւ ունեցած ըլլան, քանի որ քիչ մը յառաջ Արարատէն սկսելով էր որ ամբողջ Հայաստանի վրայ իշխանութիւնը տարածուեցաւ։ Եթէ ջրհեղեղի ազգային աւանդութիւնը՝ նոյն իսկ աստուածաշունչ Գրոց թարգմանութեանը վրայ ազդած ըլլար, հարկ էր որ այս աւանդութիւնն ամբողջ մատենագրութեան մէջ ալ յարմար տեղերը նշմարուէր։ Ի՞նչ կը վկայէ մատենագրութիւնը։ Ագաթանգեղոս պահած է Ս. Գայիանէի եւ Ս. Հռիփսիմէի[1] մէկ աղօթքն, զոր ասոնք իրենց մարտիրոսանալէն յառաջ

---

[1] Էջ 136։

աղօթած են կ՚ըսուի։ Այս աղօթքին մէջ կը յիշատակուի Նոյին փրկուիլը եւ ամենեւին չի յիշատակուիր տապանին Մասիսի վրայ նստիլը. անշուշտ աղօթքին հեղինակն այս պարագան յիշելը զանց չէր առներ, եթէ այս մօտակայ լեռը տապանին իջած տեղը համարուէր։ Յայտնի է թէ այն ատենները Սրբոց Նշխարաց յարգութիւնը սաստիկ ծաղկեալ վիճակի մէջ էր ի Հայս։ Ս. Գրիգորի Լուսաւորչի Վարդապետութիւնն[1] ալ կը լռէ տապանին Մասիսի վրայ իջած ըլլալը, թէպէտ ջրհեղեղի պատմութիւնը յարմար առիթ էր իրեն՝ Հայոց այս առաւելութիւնը յիշատակելու։ Վկայարանաց շինութեանը համար Տրդատ[2] Մասիսի գագաթէն քարեր կը բերէ։ Որպիսի՜ յարմար առիթ էր այսպիսի պատմութեան մը համար յիշելու՝ թէ տապանը Մասիսի վրայ հանգչած է, եթէ ժողովրդեան հաւատքը Մասիսը անոր իջած տեղը համարած ըլլար։ Սակայն կը լռէ։ Եզնիկ[3] երկու անգամ կը խօսի ջրհեղեղի վրայ, սակայն երկրորդ տեղն, երբ յարմար առիթը կը ներկայանայ, չ՚ըսեր թէ տապանակիր լեռը Մասիսն է։ Վարդանանց պատերազմին[4] մէջ Ղեւոնդ՝ Արտազու դաշտին ճակամարտէն յառաջ խօսած ճառին մէջ յայտնապէս կը յիշէ Նոյեան ջրհեղեղը, որ Հայաս-

---

1 Անդ, էջ 227։

2 Անդ, էջ 576։

3 Ընդդէմ աղանդոց էջ 153 եւ 164։ Հմմա. Ըֆր., էջ 119 եւն, 126 եւն։

4 Եղիշէ, Մատենագրութիւնք, էջ 82։ Վարդանայ պար.։

տանն աւերեց։ Բայց չի յիշեր Մասիսի տապանը, Աստուծոյ իւր հաւատարմաց ըրած օգնութեան այն նշանը, թէեւ յարմար առիթն էր այս վայրկենին յիշեցընելու Հայ քրիստոնեայ դիւցազանց՝ իրենց երկրին առաւելութիւնը։ Ղազար Փարպեցի[1] ոգեւորուած կը նկարագրէ Արարատ երկրին փառաւորութիւնը։ Բայց իրեն ծանօթ չէ տապանին Մասիսի երկնաքերձ գագաթին վրայ իջած ըլլալը։ Ասոր հակառակ՝ Թովմաս Արծրունի[2] տապանը Վասպուրականի լեռները իջած կ'աւանդէ։ Սրբոց Հռիփսիմեանց պատմութիւնը, որ Մովսէս Խորենացւոյ կ'ընծայուի, Կորդուաց Սողոփ լեռը՝ տապանին հանգչած լեռը կ'անուանէ։[3] Եզնկայ ի վկայութիւն կոչուած կասկածելի տեղը՝ Հայ հնագոյն մատենագրութեան մէջ միակ տեղն է, որ կը յիշէ տապանն ու տապանակիր լեռը՝ գնելով զայն Կորդուաց մէջ։

Ս. Յակովբայ Մծբնացւոյ Պատմութիւնը՝ տպուած Սոփերաց մէջ՝ (ԺԱ—ԺԲ դար)՝ կը ցուցնէ (էջ 21 եւն) թէ գրքիս գրուած ատենները կը վիճուէր տապանին ուր իջած ըլլալուն վրայ եւ թէ այս միջոցներուն էր որ Կորդուաց աւանդութենէն կ'անցնուէր Մասիսի աւանդութեան։ Արդէն Ս. Յակովբայ Մծբնայ Հայրապետին վկայաբանութիւնն ալ պատմած է տա-

1 Պտմ. Վենետ. 1891, էջ՝ 24 եւն։

2 Քաջունի, անդ, էջ 12։ Թովմաս Արծրունի, Պետերբ. 1887, է 19։

3 Ալիշան, անդ, էջ 57։

պանին վրայոք՝ "ի լերին Արարատայ։" Գրեթէ այս ժամանակէն սկսեալ Մասիսը մատենագրութեան մէջ տապանակիր կ՚ըսուի՝ նախ ճառընտիրներու (ԺԱ—ԺԲ դար) մէջ եւ Յովհաննու Երզնկացւոյ[1] (ԺԳ. դար) քով, մինչ Վարդան իր Աշխարհագրութեանը (տես Մուրատ էջ 76) եւ Պատմութեանը մէջ՝ այս կէտս կը լռէ թէեւ յարմար առիթ ներկայացած էր իրեն. Նոյնպէս կը լռէ Գրիգոր Նարեկացի Յակովբայ Մծբնացւոյ վրայ գրած ներբողեանին մէջ, թէեւ կ՚աւանդէ անոր տապանին երթալը (Մտնգր. Վենետ. 1840, էջ 448 եւն)։

Միայն Ասորւոց մատենագրութեան ազդեցութիւնն Հայոց վրայ չի կրնար այն պատճառն եղած ըլլալ, որ Հայերը ստիպած է Մասիսը՝ Ս. Գրոց տապանալեռը չհամարիլ։ Եթէ մեծ էր այս ազդեցութիւնը, սակայն աւելի մեծ էր Յունաց ազդեցութիւնը՝ որ կրնային նոյնչափ ի նպաստ Մասիսի ի վկայութիւն կոչուիլ իրենց Արարատ = Հայք հաւասարութեամբը, որչափ Ասորիք՝ անոր հակառակին։ Բայց կ՚երեւայ թէ ջրհեղեղի ազգային-հայկական աւանդութիւնն այնպէս որոշ ու պայծառ կերպով միայն զՄասիս մատնանիշ մատնացոյց չէր ցուցներ, որ միայն այս լեռը տապանին իջած լեռը համարուէր։ Յիշելով թէ ինչպիսի՛ հակակրութիւն կը տեսնուի Ղազար Փարպեցւոյ քով Ասորւոց դէմ, կը ստիպուինք՝ մեծ զօրութիւն ու տեւականու-

---

[1] Սոփերք Ե, էջ 124։

թիւն չընծայել ազգային աւանդութեանց վէճերուն մէջ՝ ասորական ազդեցութեան։

Նմանապէս Հայաստանէն դուրս ալ աւելի հարաւային երկիր մը կը համարուի այն տեղն, ուր տապանը նստաւ։ Հինգերորդ դարուն[1] Միջագետաց դաշտին մէկ վանքը կը ներկայացընէ տապանին իջած տեղն՝ ըստ ասորական եւ քաղդէական աւանդութեան։ Եպիփան կը գրէ[2] «Եւ դարձեալ մինչեւ այսօր Նոյի նաւուն մնացորդները կը ցուցնեն Կորդուաց երկրին մէջ։» Եպիփանէն յառաջ՝ Թէոփիլոս անտիոքացի[3] ըսած է թէ տապանն Արաբիոյ մէկ լերան վրայ իջած ըլլայ։ Այս տեսութիւնը հին աշխարհագրութեան տեսակէտով ալ եղական ու անսովոր է, սակայն կը միաբանի Ս. Եպիփանի տեսութեանը հետ, եթէ սկզբնական բնագրին մէջ՝ որ հաւանական է, Արաբիայի տեղ Արբահա ենթադրենք. նոյն ատենները տակաւին վերին Զաբի վրայ գտնուած Առահապիտիս գաւառը Արբահա կը կոչուէր։ Ասով առջեւնիս կ'ունենանք այսօրուան քրդաբնակ հարաւ-արեւելեան Վասպուրականը։

Նման են վերը յիշուած հնագոյն վկայութիւնները։ Պեշիտտա եւ Թարգում[4] կ'ըսեն թէ տապանը Կորդուաց լեռները իջած է։ Զըրհե-

---

1 Հմմտ. Himpel, Theol. Quartalschr. 55. S. 349. Assemani, Bibl. orient. III, 1, 214.

2 Գիրք հերձուածոց 1, 19 Migne 41 p. 260

3 ad Antolycum III. c. 19 M. VI, p. 1147.

4 Բերլինի։

պանին վրայ՝ “ի լերին Արարատայ։„ Գրեթէ այս ժամանակէն սկսեալ Մասիսը մատենագրութեան մէջ տապանակիր կ'ըսուի՝ նախ ճառընտիրներու (ԺԱ—ԺԲ դար) մէջ եւ Յովհաննու Երզնկացւոյ[1] (ԺԳ. դար) քով, մինչ Վարդան իր Աշխարհագրութեանը (տե՛ս Մուրատ էջ 76) եւ Պատմութեանը մէջ՝ այս կէտս կը լռէ թէեւ յարմար առիթ ներկայացած էր իրեն. Նոյնպէս կը լռէ Գրիգոր Նարեկացի Յակովբայ Մծբնացւոյ վրայ գրած ներբողեանին մէջ, թէեւ կ'աւանդէ անոր տապանին երթալը (Մտնգր. Վենետ. 1840, էջ 448 եւն)։

Միայն Ասորւոց մատենագրութեան ազդեցութիւնն Հայոց վրայ չի կրնար այն պատճառն եղած ըլլալ, որ Հայերը ստիպած է Մասիսը՝ Ս. Գրոց տապանալեռը չհամարիլ։ Եթէ մեծ էր այս ազդեցութիւնը, սակայն աւելի մեծ էր Յունաց ազդեցութիւնը՝ որ կրնային նոյնչափ ի նպաստ Մասիսի ի վկայութիւն կոչուիլ իրենց Արարատ = Հայք հաւասարութեամբը, որչափ Ասորիք՝ անոր հակառակին։ Բայց կ'երեւայ թէ ջրհեղեղի ազգային-հայկական աւանդութիւնն այնպէս որոշ ու պայծառ կերպով միայն զՄասիս մատնանիշ մատնացոյց չէր ցուցներ, որ միայն այս լեռը տապանին իջած լեռը համարուէր։ Յիշելով թէ ինչպիսի՜ հակակրութիւն կը տեսնուի Ղազար Փարպեցւոյ քով Ասորւոց դէմ, կը ստիպուինք՝ մեծ զօրութիւն ու տեւականու-

[1] Սոփերք Ե, էջ 124։

թիւն չընծայել ազգային աւանդութեանց մէջերուն մէջ՝ սօրական ազդեցութեան։

Նմանապէս Հայաստանէն դուրս ալ աւելի հարաւային երկիր մը կը համարուի այն տեղն, ուր տապանը նստաւ։ Հինգերորդ դարուն[1] Միջագետաց դաշտին մէկ մասը կը ներկայացընէ տապանին իջած տեղն՝ ըստ սօրական եւ քաղդէական աւանդութեան։ Եպիփան կը գրէ[2] «Եւ դարձեալ մինչեւ այսօր Նոյի նաւուն մնացորդները կը ցուցնեն Կորդուաց երկրին մէջ։» Եպիփանէն յառաջ՝ Թէոփիլոս անտիոքացի[3] ըսած է թէ տապանն Արաբիոյ մէկ լերան վրայ իջած ըլլայ։ Այս տեսութիւնը հին աշխարհագրութեան տեսակէտով ալ եզական ու անսովոր է, սակայն կը միաբանի Ս. Եպիփանի տեսութեանը հետ, եթէ սկզբնական բնագրին մէջ՝ որ հաւանական է, Արաբիայի տեղ Արբահա ենթադրենք. Նոյն ատենները տակաւին վերին Զաբի վրայ գտնուած Առահապիտիս գաւառը Արբահա կը կոչուէր։ Ասով առջեւնիս կ'ունենանք այսօրուան քրդաբնակ հարաւ-արեւելեան Վասպուրականը։

Նման են վերը յիշուած հնագոյն վկայութիւնները։ Պեշիտտա եւ Թարգում[4] կ'ըսեն թէ տապանը Կորդուաց լեռները իջած է։ Զրհե-

1 Հմմտ. Himpel, Theol. Quartalschr. 55. S. 349. Assemani, Bibl. orient. III, 1, 214.

2 Գիրք հերձուածոց 1, 19 Migne 41 p. 260

3 ad Antolycum III. c. 19 M. VI, p. 1147.

4 Բերլինի։

ղեղի վրայ եղած հնագոյն տեղեկութիւններէն կ'առնու Հերոնիմոս[1] հետեւեալը. “Այս տապանն ու ջրհեղեղը կը յիշեն այն ամէնքը, որ բարբարոս պատմութիւններ գրած են. զանոնք գործածած է Բերոսոս Քաղդէացին, որ ջրհեղեղի վրայ տեղեկութիւն տալով կ'ըսէ. Կ'ըսուի թէ ի Հայս Կորդուաց լերան մօտ մնացած է այս նաւուն մէկ մասը, եւ թէ ոմանք անկէ ձիւթ կամ կուպր փրցընելով կը շրջեցընեն, զոր գլխաւորաբար անոնք կը գործածեն որ կը սրբուին ու կը մաքրուին: Այլ նաեւ Հերոնիմոս Եգիպտացի, որ Փիւնիկեցւոց հնութիւնները գրեց գեղեցկախօս կերպով, եւ Մնասէաս եւ այլք բազումք:„ Նման էր Եւսեբիոսի[2] հնոց քով կարդացածը: Յոյն պատմագրաց՝[3] Յովսեպոսի, Եւսթատիոս Անտիոքացւոյ, Եւսեբիոսի, Եպիփանու, Ոսկեբերանի եւ Թէոդորէտոսի տապանին իջած տեղը Հայաստանի լեռներն անուանելը կամ Արարատը Հայոց աշխարհին համազօր դնելը՝ դեռ Կորդուաց աւանդութեան ընդդիմանալ կամ հակառակիլ ըսել չէ, բաւական որ նկատողութեան առնուի թէ այս աշխարհագրական գաղափարներն ինչպէս անորոշ են: Այս անորոշութիւնը կը տեսնուի ինչպէս Ոսկեբերանի, նոյնպէս եւ Եպիփանու քով:

1 lib. e situ et nominibus Migne 23, p. 859.

2 Պատր. Աւետ. Թ. 12. Մինէը 21 էջ 699 եւ Մեկն. Ես. Մինէը 24, էջ 353:

3 Antiq. XX. 2. 7. Niese IV p, 280. M. XVIII p. 753. XXIV p. 353. XLI p. 184. LIII p. 234. LVI p. 288. LXXXI p. 752.

Ոսկեբերան կը խօսի Արարատ լերան վրայ, իսկ Եպիփան մէջ մը կ'ըսէ թէ տապանը Կորդուաց երկիրն իջած է, մէջ մ'ալ թէ Կորդուաց երկրին ու Հայոց աշխարհին միջեւ տեղ մը, ուր հարկ է որ զանազանուին Կորդուք եւ Հայք: Եփրեմ Ասորի Կորդուք, Արարատ եւ Հայք իրարու հետ կը նոյնացնէ[1]: Մովսիսի Խորենացւոյ անունը կրող Աշխարհագրութիւնն ալ Կորդուքը Հայոց աշխարհին[2] մէկ մասը կը համարի: Փաւստոս[3] Կորդուքը Հայաստանի մաս կը հաշուէ. Տրդատայ իշխանութեան ատեն՝ Կորդուաց իշխանը Հայոց իշխաններուն կարգէն կը ներկայանայ:[4] Վերջապէս ջրհեղեղի բաբելական պատմութիւնը կ'ըսէ թէ Քսիսութրոսնոյի տապանն իջաւ Նիսիրի լեռը: Լենորմանի ըսածին նայելով՝ Նիսիրի լեռը ճիշդ նոյն է Բերոսոսի Կորդուաց լեռներուն հետ:[5]

Ընդունելու ենք թէ Արարատ անունն իբր երկրի մը քաղաքական անուն՝ այլ եւ այլ փոփոխութիւններ կրած է, այնպէս որ ի սկզբան կը ցուցնէր երկիր մը Վանայ լճին արեւելակողմն ու հարաւակողմը, յետոյ երկրին ընդարձակուելովը եղաւ գրեթէ ամբողջ Հայաստանի անունը եւ ի վերջոյ Ուրարտեանց երկրին վրայ

1 Opera ed. Pet. Benedict. Romae 1750. II p. 82. 161, I p. 560.

2 Անդ, էջ 29 եւն, 43:

3 Անդ, էջ 214:

4 Քաջոանի, անդ, էջ 83:

5 Anfänge der Gesch. II. S. 29.

ամփոփուեցաւ անունն՝ անոր գոյութեան վերջին շրջանին մէջ, եւ այս ամփոփմամբ մնաց իբրեւ նահանգի կամ գաւառի անուն. ասով կը տեսնուի թէ Հրէից եւ Ասորւոց կորդուական աւանդութեանը եւ Ծննդոց գրոց ըսածին մէջ հակասութիւն չկայ, եթէ նկատելու ըլլանք որ հոն Արարատ անունը գործածուած է ոչ թէ վերջին իմաստովն, այլ սկզբնական իմաստովը։ Այն ատեն հակասութիւն յառաջ կու գայ, երբ Մասիսը = Արարատայ լեռներուն դնենք՝ հիմնուելով յետնագոյն աշխարհագրական անուան վրայ. այսպիսի հաւասարութեան մ՚իրաւացի ըլլալը խնդրական պէտք է որ ըլլայ։ Մասիսի եւ Կորդուաց աւանդութիւնը չի կրնար այնու մեկնուիլ, իբր թէ Ս. Գրոց տեղեկութիւնը յընթացս ժամանակաց փոփոխուած ըլլայ, ինչու որ Մասիսի աւանդութիւնն Ս. Գրոց խօսքերը լաւ չհասկընալէ ծագած է։ Կ՚ընդունինք թէ ջրհեղեղի հայկական Մասիսի զրոյց մը գոյութիւն ունեցած ըլլալու է, բայց չկայ ամենեւին ծանրակշիռ պատճառ մը՝ եբրայական տեղեկութիւնն անոր համեմատ մեկնելու։ Թէ Կորդուաց աւանդութիւնն անկէ անկախ է թէ ոչ՝ մեր խնդրէն դուրս կը մնայ. բայց երկու տեղեկութեանց ալ ընդհանուր գծերը իրարու հետ կը միաբանին, իսկ տապանակիր լերան տեղը որոշել դեռ կարելի չէ։

Ս. Գրոց Արարատին իմաստը յետնագոյն Գրոց համար լուսաւորուած է լուսով հնագիտական քննութեան, իսկ Ծննդոց համար սա-

չափ միայն կրնանք ըսել թէ անուանս առաջին անգամ մեր դիմացն ելլելը՝ կը տանի զմեզ Վանայ ծովուն հարաւակողմն ու արեւելեան կողմը։ Թէ անունս որչափ հնութիւն ունի՝ դեռ որոշ չէ։ Կարելի է մինչեւ Ծննդոց գրոց գրուելուն ժամանակը հասնի անուանս հնութիւնը՝ նշանակելով յիշեալ երկիրը։



ամփոփուեցաւ անունն՝ անոր գոյութեան վերջին շրջանին մէջ, եւ այս ամփոփմամբ մնաց իբրեւ նահանգի կամ գաւառի անուն. ասով կը տեսնուի թէ Հրէից եւ Ասորւոց Կորդուական աւանդութեանը եւ Ծննդոց գրոց ըսածին մէջ հակասութիւն չկայ, եթէ նկատելու ըլլանք որ հոն Արարատ անունը գործածուած է ոչ թէ վերջին իմաստովն, այլ սկզբնական իմաստովը։ Այն ատեն հակասութիւն յառաջ կու գայ, երբ Մասիսը = Արարատայ լեռներուն դնենք՝ հիմնուելով յետնագոյն աշխարհագրական անուան վրայ. այսպիսի հաւասարութեան մ'իրաւացի ըլլալը խնդրական պէտք է որ ըլլայ։ Մասիսի եւ Կորդուաց աւանդութիւնը չի կրնար այնու մեկնուիլ, իբր թէ Ս. Գրոց տեղեկութիւնը յընթացս ժամանակաց փոփոխուած ըլլայ, ինչու որ Մասիսի աւանդութիւնն Ս. Գրոց խօսքերը լաւ չհասկընալէ ծագած է։ Կ'ընդունինք թէ ջրհեղեղի հայկական Մասիսի զրոյց մը գոյութիւն ունեցած ըլլալու է, բայց չկայ ամենեւին ծանրակշիռ պատճառ մը՝ եբրայական տեղեկութիւնն անոր համեմատ մեկնելու։ Թէ Կորդուաց աւանդութիւնն անկէ անկա՞խ է թէ ոչ՝ մեր խնդրէն դուրս կը մնայ. բայց երկու տեղեկութեանց ալ ընդհանուր գծերը իրարու հետ կը միաբանին, իսկ տապանակիր լերան տեղը որոշել դեռ կարելի չէ։

Ս. Գրոց Արարատին իմաստը յետնագոյն Գրոց համար լուսաւորուած է լուսով հնագիտական քննութեան, իսկ Ծննդոց համար սա-

չափ միայն կրնանք ըսել թէ անուանս առաջին անգամ մեր դիմացն ելլելը՝ կը տանի զմեզ Վանայ ծովուն հարաւակողմն ու արեւելեան կողմը։ Թէ անունս որչափ հնութիւն ունի՝ դեռ որոշ չէ։ Կարելի է մինչեւ Ծննդոց գրոց գրուելուն ժամանակը հասնի անուանս հնութիւնը՝ նշանակելով յիշեալ երկիրը։



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաճի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալշպէր Տըվլշէ եւ Գ. Փիւռօ, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարրիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Բ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794–1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբէր Փր. Կ., Քննութիւնք զրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 զրնկատիպ.) 1893: 8° Երես՝ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես՝ 103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: 8° Երես՝ ԺԲ+294: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Ֆր. 2.50

ԺԸ. Տիռրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8 Երես՝ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., “Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Ֆր. 6.—

ԻԱ. Տոմաշեկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8° Երես՝ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աւգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Փր. 1.50

ԻԳ. Ցովհաննեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Ցովհաննեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Նորոս հեղինակներու ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Է+123: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով): 1898: 8° ԺԱ+202 էջ: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8° 175 էջ: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Է+26: Փր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Фр. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ միծակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161: Фр. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբէթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկատիպ:) 1899: 8°. Երես՝ Ը+558: Фр. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Ը+124: Фр. 1.—

ԼԵ. Կարիեր Ա., Հեթանոս Հայաստանի ուխտ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48: Фр. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198: Фр. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ. Խրկար եւ իւր խմաստութիւնն, Ազապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: 8° Երես՝ ԺԲ+388: Фр. 4.50

ԼԸ. Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: 8° Երես Ը+110: Фр. 1.50

ԼԹ. Վէբէր Դր. Սիմոն, Աբաբատը Ս. Գրոց մէջ: Թրգմ. Հ. Բառնաբաս Վ. Պիլէզիկճեան: 1901: 8° Երես՝ Ե+77: Фр. 1.—

